ՀԱՅՐ ԼԵՒՈՆ ՁԷՔԻԵԱՆ

# ՄԵԾ ԵՂԵՌՆԻ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿ՝ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆ ԵՒ ՄԱՐՏԱՀՐԱՒԷՐ

(դասախօսութիւն)

*ՋԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Բ.

ԳԱՀԻՐԷ
2016

ՀԱՅՐ ԼԵՒՈՆ ԶԷՔԻԵԱՆ

# ՄԵԾ ԵՂԵՌՆԻ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿ՝ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆ ԵՒ ՄԱՐՏԱՀՐԱՒԷՐ

(դասախօսութիւն)

*ՋԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Բ.

ԳԱՀԻՐԷ
2016

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

2014 Ապրիլին, Երեւանի Ամերիկեան Համալսարանին մէջ տեղի ունեցաւ Հայր Լեւոն Զէքիեանի դասախօսութիւնը՝ *Մեծ Եղեռնի հարիւրամեակ՝ յիշողութիւն եւ մարտահրաւէր* խորագիրով, կազմակերպութեամբ Հայաստանի Ամերիկեան Համալսարանի Հայ Մատենագրութեան Թուանշանային Գրադարանին:

Տեսագրութիւնը երկու տեղադրումով կը գտնուի YouTube-ի մէջ.

1. Տեղադրուած *արտէրիա* մշակութային, քննադատական ամսագիրին կողմէ, 17 Ապրիլ 2014-ին: Յղումը կարելի է գտնել ամսագիրի կայքէջին մէջ (http://www.arteria.am/hy/1397815813):

2. Տեղադրուած Մերուժան Կարապետեանի (Merujan Karapetyan) YouTube-ի անձնական էջին մէջ, 28 Ապրիլ 2014-ին:

2016 Մարտ 15-ի տուեալներով, առաջինը ունեցած է 42 դիտորդ, իսկ երկրորդը՝ 686: Ուրեմն, շուրջ 19 ամսուայ ընթացքին՝ 743 դիտորդ: Դիտորդային ոչ-գոհացուցիչ թիւը ուղեցոյց մը կրնայ հանդիսանալ՝ որ այստեղ գործ ունինք ցեղասպանական ընկալումի ու մեկնաբանութեան ոչ-հիմնահոսանքային, ոչ-մարտավարական-ամբոխավարական դրսեւորումներու հետ:

Դասախօսութիւնը տեւած է շուրջ երկու ժամ, որուն առաջին ժամը յատկացուած է Հայր Զէքիեանի խօսքին, իսկ երկրորդը հարցում-պատասխաններու:

Ստորեւ, իմ գրառումովս կը ներկայացնեմ դասախօսութիւնը ամբողջութեամբ՝ ներառեալ հարցում-պատասխանները:

Հայր Զէքիեան կը դասախօսէ առանց ընթերցելու, որ գեղեցիկ հաղորդականութիւն մը կը շնորհէ իր խօսքին: Հասկնալիօրէն, այս բնական հաղորդականութիւնը՝ իր հետ յառաջացնելով լեզուական ազատութիւններ ու նոյնիսկ մտաւոր թռիչքներ, միշտ չէ որ կարելի եղաւ բառացիօրէն պահպանել գրառումփոխադրութեանս մէջ: Պահպանելով խօսակցական լեզուն՝ իր բառային կրկնութիւններով եւ կուտակային նախադասութիւններով, արդարեւ, նախադասութիւններու կազմութեան առումով կատարած եմ որոշ միջամտութիւններ, առանց ոչ մէկ կերպ վնասելու արտայայտուած գաղափարներուն:

Ի տարբերութիւն այն մտաւորականներէն՝ որոնք շատ կարեւոր ու այժմէական նիւթերու մասին կը բանախօսեն սառնասրտութեամբ, «գիտական» զսպուածութեամբ, կարծէք գիտելիքը գոյութիւն ունենայ իբրեւ իրենցմէ անդին գտնուող առարկայ մը իսկ իրենք ըլլան այդ գիտելիքային առարկայականութեան գիտնական փոխանցողները, Հայր Ջէքիեանի գիտելիքներն ու համոզումները կը նոյնական են: Իրեն համար գիտելիքը ներքնականացուած համոզում մըն է, իւրաքանչիւր գիտելիք ինքնին գաղափար մըն է (եւ ոչ գաղափարախօսութիւն)՝ ընդունակ ուրիշ գաղափարներու վերարտադրութեան, որ կը մերժէ դառնալ ինքն իր մէջ աւարտուած գոյութիւն մը: Կը բաւէ հաղորդակից ըլլալ դասախօսութեան յաջորդած հարցումներու բազմազանութեան եւ պատասխաններու ալ աւելի ընդարձակութեան, համոզուելու համար Հայր Լեւոնի գաղափարներուն բաց իմաստները:

Հայկ Աւագեան

# ՄԵԾ ԵՂԵՌՆԻ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿ՝ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆ ԵՒ ՄԱՐՏԱՀՐԱՒԷՐ

ՀԱՅՐ ԼԵՒՈՆ ԶԷՔԻԵԱՆ

ՀԱՅՐ ԼԵՒՈՆ ԶԷՔԻԵԱՆ - Բարի երեկոյ բոլորիդ:

Նախ շնորհակալութիւն պարոն Մերուժան Կարապետեանին եւ իր կազմակերպութեան այս հրաւէրի համար, որ առիթը ընծայեցին խօսելու համար նիւթի մը շուրջ որ շատ կարեւոր կը նկատեմ որովհետեւ կը կարծեմ (եւ որովհետեւ հասարակաց համոզումն է) թէ մեր էութեան, մեր ինքնութեան հետ ամենասերտ առնչող նիւթերէն մէկն է:

Այս վերջին 15-20, գուցէ նաեւ 30-40 տարիներու ընթացքին, շատ յաճախ խօսած ենք ցեղասպանութեան մասին, շատ-շատ յաճախ: Եւ ըսեմ, փառք Աստուծոյ, խօսած է նաեւ ոչ հայ աշխարհը: Այլազգիներ շատ յաճախ կը խօսին այսօր եւ երբ կը խօսին՝ յաճախ մեր ցանկութեան մէջ, մեր զգացական աշխարհին մէջ նաեւ բաւական խանդավառութիւն ալ կը ստեղծեն: Պէտք է խոստովանիմ, որ միշտ չէ որ այդ խանդավառութիւնը անձնապէս զգացած չեմ, երբեմն նոյնիսկ տխրած եմ որոշ չափով: Միտքս աւելի յստակելու համար օրինակ մը տամ: Կը ներէք, անուն, ազգանուն եւ երկրի անուն պիտի չյիշեմ: Երկիր մը կայ որ միշտ վարանած է, տատամսած է հայոց ցեղասպանութիւնը ճանաչելու գործընթացին մէջ: Մանաւանդ իր բարձրագոյն կարգի, բարձրագոյն մակարդակի ներկայացուցիչը շատ փափուկ պահու մը ընթացքին՝ երբ ամերիկեան ծերակոյտը իր հերթական խոստումնալի ճանաչման գործընթացներէն (որոնք վերջին պահուն կը ջնջուէին) մէկուն հանգրուանին մէջ էր, կրցած է գտնել այն ժամանակի Ամերիկայի նախագահ Քլինթընը՝ մինչ Եգիպտոս կ'այցելէր (կարծեմ Եգիպտոսի անապատներուն մէջ հին յուշարձանները այցելութեան պահուն), եւ, անշուշտ միջնորդներու ճամբով, ձեռքը նամակ մը սպրդել, ըսելու համար՝ որ «կը խնդրենք, իբրեւ ձեր լաւագոյն դաշնակիցներէն մէկը, որ այս ճանաչումը տեղի չունենայ»: Այս նոյն անձը՝ երբ ինքը եւ իր երկիրը սկսան

լուրջ խնդիրներ ունենալ Թուրքիոյ հետ, յանկարծ Թուրքիոյ վարչապետին զգուշացուց քիչ թէ շատ սա բանաձեւով. «Զգոյշ եղիր, եթէ խելօք չկենաս, ես իմ երկրիս մէջ հայոց ցեղասպանութիւնը ճանաչել կու տամ»: Այս վարքագիծը կը գտնուի մեր շատ մը հայրենակիցներուն մէջ՝ գոնէ Իտալիայի իմ հայ շրջանակիս մէջ, բայց նաեւ իմ հանդիպած ամերիկահայերու, ֆրանսահայերու, նաեւ Միջին Արեւելքէն բաւական հայերու մէջ, որոնք շատ խանդավառ են՝ որ այդ երկիրը վերջապէս ցեղասպանութիւնը պիտի ճանչնայ: Ես անկեղծօրէն շատ տխուր էի՝ որ մեր այդ սուրբ նախատակները յետին, ամենէն անարժէք, բարոյազուրկ եւ անողոք քաղաքականութեան գործիքներ դարձած են եւ շահագործութեան առարկայ: Ուրեմն, Եղեռնի խօսքը, ցեղասպանութեան խօսքը, վերջին տասնամեակներու ընթացքին շատ յաճախ յեղյեղուած է, բայց իմ կարծիքովս ոչ միշտ այնքան յաջող կերպով:

Բնականաբար, կ՚ուզեմ անմիջապէս ըսել որ ինչ որ այստեղ կ՚արտայայտեմ լոկ անձնական մտածումներ են, անձնական խոհեր են, ես անձնապէս միայն իմ անձս կը ներկայացնեմ, ես որեւէ ներկայացուցչական հանգամանք չունիմ: Երբեմն իտալացի, երբեմն նաեւ Իտալիայէ դուրս լրագրողներ կամ հաստատութիւններ դիմած են ինծի՝ թէ այս մասին ի՞նչ կը մտածեն հայերը: Ես պատասխանած եմ. «Չեմ գիտեր, պէտք է իւրաքանչիւր հայու հարցնել թէ ինչ կը մտածէ, ես կրնամ խօսիլ միայն իմ անունովս»: Ես որեւէ հաստատութիւն կամ հիմնարկ ներկայացնող մէկը չեմ: Օրինակ, ենթադրենք, Մխիթարեան Միաբանութեան աբբահայրը, երբ խօսի կը ներկայացնէ զայն: Ըլլալով Պո-Արաքս Մշակութային Միութեան նախագահը, շատ շատ կրնամ անոր անունով խօսիլ: Հետեւաբար, կ՚ուզէի անմիջապէս ճշդել՝ որ ինչ որ կ՚արտայայտեմ, ինչ գաղափար որ կ՚արտայայտեմ անձնական գաղափարներ են եւ բնականաբար կ՚առաջարկուին նախ խորհրդածութեան եւ յետոյ վիճարկումի: Բնականաբար, այստեղ նաեւ տարակարծութիւնը՝ բանաւոր տարակարծութիւնը, ողջամիտ տարակարծութիւնը, ինչպէս բնորոշ է ժողովրդավար ընկերութեան, մեր պարագային ալ ոչ միայն թելադրիչ այլ նաեւ շինիչ հանգամանք կը ստանայ: Յետոյ շատ անգամ, մենք կը կարծենք թէ կը տարակարծինք բայց խորքին մէջ չենք տարակարծիր: Կամ շատ անգամ կը կարծենք թէ համաձայն ենք որովհետեւ նման բառեր կը գործածենք, բայց այդ բառերուն խորքային տարբեր նշանակութիւններ կ՚ընծայենք: Բազմիցս պատահած է հանրային խօսակցութիւններու ընթացքին՝ երբ ներկաներէն մէկը այնպիսի հարցում մը ուղղած է կամ առարկութիւն մը ըրած է կամ թէ խորհրդածութիւն մը, նկատողութիւն մը կատարած է, որ շատ պարզ շուկայական բանաձեւով կ՚ըսեմ՝ «դուն տանձ կ՚ըսես, միւսը խնձոր կը հասկնայ»: Այս թիւրիմացութիւնն ալ երբեմն տեղի կ՚ունենայ: Որով

նոյնիսկ ձեւական, առերեւոյթ համաձայնութիւնները կամ տարակարծութիւնները ոչ միշտ նոյնութեամբ խորքային համաձայնութիւններ կամ խորքային տարակարծութիւններ են:

Ուրեմն, ասիկա պարզապէս առիթ մըն է միասնաբար խորհրդածելու եւ գուցէ քիչ մը նոր մերձեցումով ալ մօտենալու մեր Մեծ Եղեռնի, հայոց ցեղասպանութեան հարցին: Նաեւ, առանց կեղծ համեստութեան ըսեմ, որ այս մասին բաւականաչափ գրած եմ: Այդ գրութիւնները ընդհանրապէս շրջանառութեան մէջ շատ չեն մտած, գուցէ որովհետեւ ոմանք հրատարակուած են իտալերէն լեզուով, բայց կան նաեւ անգլերէն լեզուով հրատարակուած յօդուածներ: Նոյնիսկ ցեղասպանութեան մասին մասնագիտական հատորներ գրող մարդիկ չեն մէջբերած որովհետեւ հոսանքին համաձայն չենք թիավարեր այդ յօդուածներուն մէջ:

Ընդհանրապէս, եթէ դիտէք, օրինակ, ամերիկեան գրականութիւնը այսօր, որեւէ ամերիկեան հրատարակութեան մէջ՝ գոնէ ջախջախիչ մեծամասնութեամբ, կը յիշուին միայն անգլերէն լեզուով գրութիւններ, եւ այդ անգլերէն լեզուով յիշուողներն ալ մեծ մասամբ Ամերիկա հրատարակուածները: Նոյնիսկ երբեմն կ՚անգիտացուի Մեծն Բրիտանիա հրատարակուած հրատարակութիւններ: Եւ ասիկա դժբախտաբար սկսած է մուտք գործել նաեւ եւրոպական աշխարհի մէջ: Այս ալ գիտական մեթոտաբանութեան շատ կարեւոր հարց մըն է, որով երբոր դուն կը տարակարծիս կամ քու զգայնութիւններուդ այնքան համաձայն չես նկատեր գիտական արտադրութիւն մը, որպէսզի երկար-բարակ ժամանակ չվատնես այդ նիւթին մասին վիճարկելու, քննարկելու, կարծիք յայտնելու եւ այլն, կը նախընտրես զանց ընել: Անգամ մը, ցեղասպանութեան հարցով զբաղուող բաւական ծանօթ մէկը խնդրեց ինծմէ այդ յօդուածները: Երբ ղրկեցի իրեն, ըսաւ. «Հայր Լեւոն, բոլորովին նոր մերձեցում մը կայ այստեղ, որ ընդհանուրէն զատ է»: «Այո» ըսի, «գիտեմ»: Պատահած է՝ որ զիս դասախօսելու հրաւիրած մարդիկ՝ երբ լսած են իմ ոչ հոսանքի համաձայն թիավարութիւնս, երկրորդ անգամ չեն հրաւիրած: Յուսամ [*ծիծաղով*] Մերուժանը այդ զղջումը չունենայ: Հետեւաբար, ինչ որ կ՚առաջարկեմ զուտ անձնական հանգամանք ունեցող խոհեր են, մտածութիւններ են, որոնց մասին նաեւ յետոյ կը յուսամ ժամանակ ալ ունենանք գոնէ քիչ մը կարծիքներ փոխանակելու: Եւ յետոյ այդ կարծիքներու փոխանակումը այսօր չէ որ պիտի աւարտի, ոչ ալ այսօր բոլոր հարցերը պիտի լուծուին, բայց տարուան ընթացքին, յաջորդ տարուան ընթացքին, յաջորդ հնգամեակի, յաջորդ տասնամեակի, յաջորդ քսանամեակի, յաջորդ յիսնամեակի ընթացքին, հայ միտքը, հայ ժողովուրդը պիտի մտածէ այս մասին:

Ուրիշ մեթոտաբանական նկատողութիւն մը: Մենք մեր Եղեռնին առնչութեամբ մինչեւ այսօր, ըսենք, առհասարակ լաւագոյն առումով իրեայ մտաւորականութեան հետեւորդները եղանք, հետեւակ զինուորները: Մենք մեր ուղեղով տեսութիւն մը, բան մը...: Շատ քիչ մարդիկ կան որ մեր Մեծ Եղեռնին վրայ իրենց ուղեղով ջանացած են մտածել եւ տեսաբանական, իմաստաբանական, նշանակային բան մը, տեսութիւն մը, հայեցակարգ մը արտայայտել: Մէկը կրնամ ըսել՝ Մարք Նշանեանը: Կրնաք իր տեսութիւններուն հետ համակարծիլ կամ հակակարծիլ, այդ չէ հարցը, բայց մարդը ճիգ կը բանեցնէ իւրովի մտածելու հայոց Մեծ Եղեռնին մասին՝ ի՞նչ եղեր է, ի՞նչ պատահեր է: Եւ այս ուղղութեամբ ըսեմ՝ որ գլուխ-գործոց պատմուածք մը ունինք, որ ես ինքս ալ ինձ համար նոր յայտնաբերեցի, Աւետիս Ահարոնեանի *Ողջակէզ*ը: Ընդհանրապէս Փրիմօ Լեւին կը նկատուի իրեայ ժողովուրդի ողջակիզման առնչութեամբ մեծագոյն գրողներէն մէկը: Այո, շատ մեծ է, կասկած չկայ, բայց կը կարծեմ որ Ահարոնեանի այդ *Ողջակէզ*ը չի զիջիր ոչ մէկուն: Պէտք է կարդալ: 1928-ին գրուած է, երբ արդէն Մեծ Եղեռնը, ցեղասպանութիւնը եղած էր, որուն հետեւանքները մասամբ դեռ կը շարունակուին, ինչպէս Սուրիոյ եւ Քեսապի դէպքերը: Նկատի առած որ հայ ժողովուրդի յարութիւնը, վերականգնումը Սուրիոյ անապատներու մէջ տեղի ունեցաւ, եթէ Սուրիոյ հայութիւնը աւելի կործանի եւ Քեսապը դադրի հայ գիւղ մը մնալէ (յուսամ այդպէս չըլլայ), ինձ համար գրեթէ վերջակէտին հասած կ՚ըլլանք: Որով Աւետիս Ահարոնեանի այդ պատմուածքը շատ կարեւոր կը նկատեմ: Նաեւ Ահարոնեան աղուոր խօսք մը ունի. «Այսքան չարիք թէ մոռանան մեր որդիք/Թող ողջ աշխարհ հային կարդայ նախատինք»: Աւելի յստակ անկարելի է ըսել: Ուրեմն եթէ այսպէս է, ամէն հաշտութեան, քով-քովի գալու, տրամախօսելու, խօսակցելու կարելիութիւն այլեւս վերջացած է: «Կարելի չէ մոռանալ», դուռը փակուած է ընդմիշտ: Դուն եթէ որեւէ դարման ընելու ճիգ թափես, արդէն աշխարհի նախատինքին արժանի ես: Դժուար հարց է: Ինչո՞ւ շեշտեցի որ *Ողջակէզ*ը 1928-ին գրուած է: Որովհետեւ թէեւ Մեծ Եղեռնը պատահած էր արդէն բայց պատմուածքը համիտեան ջարդերու մասին է:

Ուրիշ խօսք մը մէջբերեմ, Թէոտոր Ատորնոյի նշանաւոր խօսքը՝ «Յետ-Աուշվիցին կարելի չէ Աստուծոյ մասին խօսիլ»: Հրանդ Տինք եւս ցեղասպանութեան առնչութեամբ յարակարծիքի դիմած է: Օրինակ, շատ ծանօթ է իր բացատրութիւնը. «Փարիզ պիտի երթամ պոռալու համար որ ցեղասպանութիւն չէ եղած, Անգարա պիտի երթամ պոռալու համար ցեղասպանութիւն եղած է»: Ի՛նչ է, խե՞նթ է այս մարդը: Ի՞նչ կ՚ըսէ: Փարիզ տարբե՞ր բան պիտի ըսէ, Անգարա տարբե՞ր: Կամ ինքն իրե՞ն պիտի հակասէ: Երբոր կը ջանայի մեկնաբանել

Հրանդ Տինքի այդ, ըսենք, տեսութիւնը, մեկնեցայ Ատորնոյի այս խօսքէն եւ ըսի. «Ես հաւատացեալ հոգեւորական եմ, խորապէս կը հաւատամ, եւ կը կարծեմ թէ, այո, մարդու մը սպանութիւնը խորհուրդ մըն է»: *Գանգատ*ը կարդանք, այնտեղ չարի խորհուրդը աշխարհի վրայ մեծագոյն խորհուրդներէն մէկն է: Իմ համեստ կարծիքով՝ մեծագոյն խորհուրդն է: Ես կ'ըսեմ՝ եթէ Աստուած անհուն անսահման է, որ մեր մտքէն անսահմանօրէն անդին է, զարմանալի չէ որ երրորդութեան խորհուրդը ըլլայ մարդեղութեան խորհուրդը: Բայց Ֆրիկի թուած բոլոր պարագաները մարդկային մտքին անհեթեթութիւն կը թուին՝ ինչպէ՞ս Աստուած այդ բոլորը կը թոյլատրէ եթէ ամենաբարին է, ամենաարդարն է: Այստեղ խորհուրդ մը կայ (որով ըսի, իբր զուտ մարդկային դիտանկիւնէ մը, ես ալ խոր հաւատացեալ ըլլալով հանդերձ, կրնամ ըսել որ յետ-Աուշվիցին կարելի չէ Աստուծոյ մասին խօսիլ մարդկօրէն), որ կու գայ լրացնելու այդ տեղին հաւատքը: Մեր միտքը անդրազանցող, մեր միտքը գերազանցող անհուն խորհուրդ մը կայ որուն չենք հասնիր:

Շատ չերկարեմ: Աւետիս Ահարոնեանի պարագային այդ *Ողջակէզ*ը ի՞նչ կը պատմէ: Համիտեան ջարդերու վաղորդայինն է, կամ այդ օրերն է՝ ահաւոր, ամէն կողմ արիւն կը հոտի, կրակ կը ժայթքէ: Եւ տէր հայրը յետերեկոյեան ժամերգութեան եկեղեցւոյ դուռը պիտի փակէ: Յանկարծ անծանօթ մարդ մը կը կանգնի դիմացը: Յայտնի է որ մարդը իսլամ է՝ թուրք է կամ քուրտ է (արդէն այդ ժամանակ ազգային խնդիրը շատ չէր զանազանուէր թուրքերու եւ քուրտերու միջեւ): Նախ եւ առաջ կը վախնայ, կը կարծէ որ յետին միտքով մը եկած է: Մարդը կ'ըսէ՝ ներեցէք, կ'ուզէի ձեզի հետ խօսիլ: Հրամմեցէք, կ'ըսէ տէր հայրը, բայց մեծ վարանումով: Մարդը կ'ըսէ՝ որ տե՛ս, տէր հայր, երեք կամ չորս տարեկան երեխայ զաւակս ահաւոր հիւանդ է: Բոլոր բժիշկներուն դիմեցինք, բոլոր դեղերը փորձեցինք, չբուժուեցաւ: Բոլոր իմամները, մոլլաները կանչեցինք, աղօթեցին, չբուժուեցաւ: Երէկ գիշեր կինս երազ տեսաւ, ըսաւ որ դուն կրնաս բուժել: Եւ այդտեղ, այդ հոգեբանական նկարագրութիւնը որ կ'ընէ Ահարոնեան, այդ տէր հօր տագնապը, իր մէջ բոլոր հակադրութիւնները, իր ժողովուրդին աղէտը, ինչպէ՞ս պիտի կարենայ գերազանցել այդ աղէտը, ինչպէ՞ս պիտի կարենայ ներել որպէսզի այդ բուժումը...: Բայց եթէ՞ իր ժողովուրդը ինքզինքը դաւաճան նկատէ: Կամ յանկարծ միտքէն կ'անցնի նաեւ որ գուցէ այս մարդը կը խաբէ, հեռու տեղ մը պիտի տանի իրեն, դէպի թրքական կամ քրտական թաղերը պիտի տանի որպէսզի այնտեղ սպաննէ: Հոյակապ նկարագրութիւն մըն է: Եւ հուսկ որոշում կ'առնէ ու կ'երթայ: Ահաւասիկ, կը կարծեմ արդէն բովանդակութեամբ Փրիմօ Լեւիի կը հաւասարի: Կարդացէ՛ք Ահարոնեան, որովհետեւ ան հաւանօրէն արեւելահայ դասական արձակի

կատարն է: Կը կարծեմ, որ հիմա արդէն Ահարոնեան շատերու ընտել ըլլայ որովհետեւ սովետի շրջանին չէր կարդացուէր: Շատ մեծ գրող մըն է: Իբր քաղաքական դէմք, անշուշտ, այնքան յաջող չէ եղած բայց իբր գրող գագաթ մըն է:

Ուրեմն, ահաւասիկ այսպէս. մեր Եղեռնը շատ բարդ իրականութիւն մըն է, ինչպէս ամէն եղեռն: Այս ահաւոր դէպքին Վահան Թէքէեանի տողերը ծանօթ է. «Ահաւոր բան մը այնտեղ կը կատարուի մութին մէջ»: Ահաւոր՝ մութին մէջ: Մութ է, խաւար է, որովհետեւ չարը միշտ խաւար է: Բայց հիմա ի՞նչ կը պատահի: Կը պատահի որ մենք երբեմն, կը ներէք՝ կը չափազանցեմ անշուշտ, Մեծ Եղեռնի մասին կը խօսինք, կամ ցեղասպանութիւններու մասին մասնագէտները կը խօսին, կարծես թէ աւարի մը մասին կը խօսինք, դատաստանի մը մասին: Հիմա, գուցէ զգացիք՝ որ երբ ձեզի Ահարոնեանի վէպը կը պատմէի, մէջէս յուզում մը անցաւ: Հաւանօրէն զգացիք ասիկա: Ինչպէ՞ս կարելի է այդքան անտարբերութեամբ՝ կարծէք անդամազննութիւն կամ դիազննութիւն կը կատարենք, խօսիլ այս ահաւոր բանին մասին, այդ ահաւոր բանը որ կը կատարուի այնտեղ:

Ինծի ծանօթ է Մեծ Եղեռնին նուիրուած երկու քերթուած (*Մեծ Եղեռն*ին մասին, որովհետեւ համիտեան ջարդերու մասին Սիամանթոյի գլուխ-գործոցը ունինք)՝ Թումանեանի *Հոգեհանգիստ*ը եւ Թէքէեանի *Ահաւոր բան մը այնտեղ...* քերթուածը զոր յիշեցի: «Ու վեր կացայ ես, որ մեր հայրենի հին օրէնքովը հին՝ / Վերջին հանգիստը կարդամ իմ ազգի անբախտ զոհերին»: Եւ այդ վեհութիւնը, այդ անդորրութիւնը որ կը ծորի Թումանեանի այս տողերէն...: Հայ ժողովուրդի իմաստութիւնը մարմնաւորող բանաստեղծն է ան: Ոչ ի զուր «Ամենայն հայոց բանաստեղծ» կոչուեր է մարդը: Ահաւասիկ մենք, այսօր, մեր այդ անդորրութիւնը կորսնցուցած ենք: Ես յաճախ կը նայիմ 1915-էն առաջ: Ընտանեկան շատ ալպոմներ լոյս տեսան վերջերս՝ մարդոց դէմքին վրայ անդորրութիւն մը կար, հանդարտութիւն մը կար: Դժբախտաբար, այսօր արար աշխարհ զայրացած է: Կեանքի պայմանները այնքան դժնդակցան որ ամէնքը կ’ապրին գրեթէ կենցաղային տագնապի մը, արհաւիրքի մը մէջ: 60 տարի է կ’ապրիմ Իտալիա: Այդ չքնաղ, գուցէ աշխարհի ամենաչքնաղ երկիրը ինծի համար անճանաչելի դարձած է այսօր: Ուրեմն, զարմանալի չէ որ ամէնքը զայրացկոտ, բարկացոտ վիճակի մը մէջ գտնուին: Մենք ալ այդպէս եղած ենք:

Հիմա գանք գլխաւոր հարցերուն: Արդէն բաւական նախաբան ըրի:

Ուրեմն, առաջին՝ ցեղասպանութեան նշանակութիւնը: Միտքս բացատրելու համար նորէն դրուագով մը սկսիմ: Կայ Փատովա (Փատովա Վենետիկի կողքի քաղաքն է, շատ նշանաւոր իր պատմական համալսարանով՝ Պոլոնիայի Համալսարանով, որ իր աւելի քան 900-ամեայ հնութեամբ կը հանդիսանայ Եւրո-

պայի առաջին համալսարանը) բնակող իտալուհի տիկին մը: Ամուսինը Փատովայի Համալսարանի նշանաւոր դասախօս է՝ բժիշկ: Տիկնոջ սկեսրայրը Տիգրանակերտցի է, Տիարպէքիրցի: Եօթը տարեկանին կը կորսնցնէ ընտանիքի բոլոր անդամները եւ միս մինակը այդ դժոխքէն կը ճողոպրի շնորհիւ քուրտ ընտանիքի մը՝ որ կ՚որդեգրէ իրեն: Երբ քիչ մը չափահաս կը դառնայ՝ 10-12 տարեկան, իրեն որդեգրած քուրտը կ՚ըսէ. «Տղաս, վերջապէս ազատ կը թողում քեզի որպէսզի ճակատագիրդ որոնես»: Տիկինը այդ մարդուն զաւակին հետ ամուսնացած է: Եւ ինծի սա կը հարցնէր, նկատի ունենալով մեր ներկայ հայերը, նոր սերունդը՝ 40-50-60 տարեկան մարդիկ, որոնք այդ դժոխքին հետ ուղղակի առնչութիւն չեն ունեցած. «Հայր Լեւոն, իմ սկեսրայրս որ դժոխքին մէջը ապրած էր, այնքան զգացական, կրքոտ ատելութիւն չունէր թուրքի հանդէպ որքան այս մարդիկը որ նման բան չեն տեսած: Սկեսրայրս կ՚ըսէր՝ որ այո՛, մեզ մորթեցին, մեզ ջարդեցին, բայց մէջերնին լաւերն ալ կային, ինչպէս այն ընտանիքը որ զիս փրկեց»: Այսօր հայու մը եթէ հարցնէք, 10-ի վրայ նուազագոյնը գուցէ 7-8, գուցէ 9, պիտի ըսէ որ անկարելի է լաւ թուրք մը գտնել: Այս հոգեբանութիւնը ինչպէ՞ս է կայացեր: Այս ալ հարց մըն է: Հաւանօրէն կապուած է տեսաբանօրէն մեր պատմութեան գոյութեան մէջ ցեղասպանութեան տեղադրումին:

1995 թուականն էր, ուրեմն 80-ամեակն էր: 80-ամեակի առթիւ այստեղ գիտաժողով մը սարքուեցաւ, բաւական լաւ գիտաժողով մը: Այն ատեն բաւական, այսպէս, վիճարկումներ ունեցանք: Հարցը սա էր. ցեղասպանութիւնը մեր ինքնութեան, մեր էութեան կեդրո՞նն է թէ կեդրոնի մօտերը գտնուող տեղ մըն է: Ես կեդրոնն է կ՚ըսէի: Այսօր ալ հաւատացած եմ որ կեդրոնն է բայց կ՚աւելցնեմ՝ կեդրոնը բայց ոչ մտասեւեռում դառնալու ձեւով: Միտքս բացատրեմ հիմա: Երբոր գիտաժողովի կազմակերպիչներէն մէկուն հարցուցի՝ որ «օրինակ տուր յետ-Եղեռնին ապրած հայ մարդոց, որոնց համար կեդրոնը եղած չըլլայ ցեղասպանութիւնը», ինքը անվարան ըսաւ՝ «օրինակ Թումանեան»: Թումանեան կը վախճանի 1923-ին: 1915-ը լրիւ ապրած է, տեսած է: Անշուշտ մէջը չէ ապրած, դժոխքին մէջը չէր բայց դժոխքին քովն էր, կը լսէր, եւ 1916-ին գրած է այդ հոյակապ գլուխ-գործոց քերթուածը՝ *Հոգեհանգիստ*ը: Կրնանք վիճիլ՝ թէ ցեղասպանութիւնը Թումանեանի հայկական հայեցակարգին, հայեցի հայեցակարգին կեդրո՞նն էր, թէ՞ կեդրոնի քովն էր, թէ՞ կողքին էր: Կարելի է վիճիլ: Բայց ոչ ոք պիտի կարենայ ուրանալ, որ Թումանեան Մեծ Եղեռնով, ցեղասպանութեամբ մտասեւեռած չէր: Ի՞նչ է մտասեւեռումը: Այն է որ դուն ուրիշ բան չես կրնար մտածել: Մենք այսօր մեր խօսոյթին մէջ երբ մեր ազգի մասին կը խօսինք, մեր ժողովուրդի մասին կը խօսինք, ցեղասպանութենէ զատ գրեթէ բանի մասին չենք կրնար խօսիլ: Մանաւանդ երբ օտարի հետ կը խօսինք:

Դարձեալ օրինակ մը բերեմ: Օր մը, առաջին անգամ ըլլալով բժիշկի մը գացի: Մարդը երեք կամ չորս տարի առաջ կարդացեր է Անտոնիա Արսլանի այդ վէպը որ հայերէնի ալ թարգմանուած է՝ *Արտոյտների ագարակը*: Շատ լաւ գրուած գիրք մըն է, վէպ մըն է, ընտանեկան յուշագրութիւն մըն է: Իբր լաւ վենետացի մարդ (ան վենետկեցի չէ բայց վենետացի է, Վենետօ նահանգէն է) ինծի նայեցաւ եւ այսպէս ըրաւ [*Հայր Լեւոն ցոյց կու տայ բժիշկին ձեռքերու շարժումները*]. «Խե՜ղճ հայ ժողովուրդ, կոտորուեր էք, ջարդուեր էք, տասանորդուեր, մորթուեր էք»: Երբոր խօսքը վերջացուց, ըսի. «Շնորհակալ եմ տոքթէօր ձեր այս համակրանքին, այս զօրակցութեան համար, բայց պիտի ուզէի նաեւ ձեր ուշադրութեան յանձնել որ միայն այս բաները չենք ըրած մեր պատմութեան ընթացքին, ուրիշ բաներ ալ ըրած ենք»: «Ի՞նչ ըրած էք» ըսաւ: Ըսի. «Ճարտարապետութիւն մը տուեր ենք, զոր ոչ թէ հայ մարդ մը այլ հրեայ ծագումով ռուս մեծ մտաւորական մը, հրեայ ռուս մը՝ Անաթոլի Եաքոպսոնը, կոչած է համաշխարհային քաղաքակրթութեան ամենէն ցնցիչ երեւոյթներէն մէկը»: Եաքոպսոնը ռուսերէն գրած է, բայց ես ֆրանսերէն ըսեմ իր գրածը՝ ‘un des phénomènnes les plus éclatants de la civilisation universelle’: Լաւ: «Յետոյ» ըսի, «մանրանկարչութիւն մը տուած ենք, որ իտալացի մասնագէտներ (իտալացի՝ ոչ թէ հայ մասնագէտներ կամ ոչ նորվեկիացի, այլ իտալացի մասնագէտներ) զայն համեմատելով ժամանակակից իտալական նկարչութեան հետ (որ արդէն կը սկսի առիւծը մռնչել), նկատած են նոյն մակարդակը կամ աւելի բարձր մակարդակ մը»: Մարդը կը զարմանայ թէ ինչ կը պատմեմ ես: Եւ ըսի. «Ձեռագրական ժառանգութիւն մը թողած ենք, որ համեմատաբար կը գերազանցէ Բիւզանդիոնինը, աշխարհի մեծագոյն, պատմութեան մեծագոյն կայսրութիւնը, ամենէն երկարատեւ կայսրութիւնը, հազար հարիւր տարի գոյութիւն ունեցած է միայն արեւելեան Հռոմը՝ Պոլիսը, ալ չաւելցնենք հին Հռոմը՝ արեւմտեան Հռոմը: Բիւզանդիան թողած է աւելի քան յիսուն հազար ձեռագիր, իսկ հայկական ձեռագրերը աւելի քան երեսուն հազար են: Համեմատութիւնը ըրէք՝ Հայաստանը եւ Բիւզանդիոնը»: Մարդը ափ ի բերան մնաց: «Բայց» ըսաւ, «այս մասին երբեք չեմ լսած»: «Տոքթէօր» ըսի, «ձեր սխալը կամ յանցանքը չէ, իմ եւ իմ ազգակիցներուս սխալն է, որով միայն յիսուն տարի է որ աշխարհի աչքին, ականջին կը պոռանք, կը պոռանք եւ միայն կը պոռանք որ միայն մորթուած ենք, ուրիշ բան չենք ըրած»: Ահաւասիկ այս է մտասեւեռումը: Եւ վստահաբար այս մտասեւեռումը Թումանեան չունէր, Թէքէեանն ալ վստահաբար չունէր, հակառակ որ Թէքէեանը հրաշքով ազատած էր այդ դժոխքէն:

Հիմա հարցը այս է. ուրեմն ես իմ անձնական կարծիքս ըսեմ, որուն մասին, ինչպէս ըսի, բնականաբար կարելի է վիճիլ: Ես մեր պատմութեան մէջ, գործ-

նական դաշտի վրայ, ապրումի, կենցաղի դաշտին վրայ, հայ ինքնութիւնը կերտող եւ կոփող երկու մեծ երեւոյթ կը տեսնեմ, մեծագոյն ըսենք: Տեսականօրէն, հայեցակարգային մակարդակի վրայ՝ գրոց գիւտը, քրիստոնէացումը եւ այլն: Բայց գործնական, ապրուած գետնի վրայ՝ Վարդանանց հերոսամարտը եւ Մեծ Եղեռնը: Եւ կը զուգակցեմ այս երկուքը որովհետեւ Մեծ Եղեռն ալ կը նկատեմ յաղթանակ եւ ոչ թէ մահ: Ինչպէս պատերազմի ընթացքին շատեր կը մեռնին, երբեմն բանակին մեծ մասը կրնայ մեռնիլ...: Վերջապէս դուք ինձմէ լաւ սորված էք մեր ժողովուրդին կողմէ Հայրենական կոչուած Երկրորդ Համաշխարհային Պատերազմը: Մանաւանդ ռուսական, սովետական կողմը, վերջապէս ամբողջ այդ տարածաշրջանը կազմող ժողովուրդները, միլիոններով զոհ տուած են եւ սակայն յաղթական դուրս եկած են: Այնպէս որ մահը յաղթանակի դէմ չէ, մանաւանդ որ մահը կեանքի սկիզբն է կրկին: Արդէն Տերտուղիանոս՝ քրիստոնեայ հայրերու մեծագոյններէն մէկը, ըսած է. «Նահատակներու արիւնը, քրիստոնեաներուս համար, կրնանք ըսել, նոր կեանքի սէրն է»: Նոյնիսկ պէտք է ըսեմ, որ 1965 թուականին՝ Եղեռնի յիսնամեակին առթիւ, եւ անոր յաջորդող առաջին տասնամեակին, մամուլի մէջ, մանաւանդ սփիւռքահայ մամուլին մէջ (որովհետեւ սովետահայ մամուլը այն ժամանակ նուազ կ'անդրադառնար այս հարցերուն), արդէն գրեթէ կարգախօսի սկսեր էր վերածուիլ՝ որ մենք այլեւս սգատօն չէ որ կը յիշատակենք այլ փառատօն: Սգատօնէ փառատօն անցքը: Բայց յետոյ եկաւ, ըսենք, այն գործընթացը՝ օտար պետութիւններու կողմէ ճանաչման հարցը: Եւ զուգէ հայերէս ալ անկախաբար տեղի ունեցաւ՝ որ հայոց ցեղասպանութեան առաջին ճանաչողը եղաւ Ուրուկուայը: Աւիկա հաւանօրէն մեզ խանդավառեց: Բնականաբար կար նաեւ իրէական ցեղասպանութեան ճանաչումը: Անշուշտ կային նաեւ 1965-ի առթիւ Թուրքիոյ կողմէ հրատարակուած բաւական գիրքեր՝ ուր կ'աշխատէին ցոյց տալ որ հայկական սպանդ մը (այն ժամանակ տակաւին ցեղասպանութիւն բառն ալ գրեթէ չէր գործածուէր) չէ եղած: Այս բոլորը մեզ մղեցին նախ ճանաչման գործընթացի մտասեւեռումին, որմէ յետոյ արդէն ուրիշ խօսոյթ չունեցանք, ուրիշ կարգախօս չունեցանք բայց եթէ ցեղասպանութիւն եւ ճանաչում, ցեղասպանութիւն եւ ճանաչում: Հետեւաբար, իմ կարծիքով, այդ ցեղասպանութիւնը մեր ինքնութեան ամենէն կարեւոր, այդ շղթային ամենակարեւոր օղակներէն մէկն է, պայմանաւ որ ատով չմտասեւեռինք, պայմանաւ որ հայ ինքնութիւնը այս երկու եզրերուն չվերածենք որովհետեւ նոյնպէս Վարդանանց հերոսամարտը՝ որքան ալ բարձր, որքան ալ յաղթական, որքան ալ փառապանծ, հայ պատմութեան միակ դրուագը չէ: Այս մտասեւեռումն է որ իմ կարծիքովս մեծ թակարդ մըն է,

որուն մէջ գէթ մասամբ ինկած ենք: Պէտք է այդ թակարդէն դուրս գանք, այդ անելէն դուրս գանք:

Երկրորդ, այստեղ հարց մըն ալ կայ՝ «Մեծ Եղեռն» եւ «ցեղասպանութիւն»: Ըսեմ համեստաբար, որ այս Մեծ Եղեռնին առաջին բացատրութիւնը տուած են այդ մեծ յուշարձանի կառուցողները: Եւ այստեղ նորէն զուտ անձնական տեսակէտ մը. յարգանք եւ փառք այդ մարդոց յիշատակին, եթէ այդ յուշարձանը չկառուցուէր այն ատեն, չեմ գիտեր թէ արդեօք երբ կը կառուցուէր: Հարցական մը, դուք գուցէ ինձմէ լաւ գիտէք պարագաները, կրնաք այդ հարցումին ձեր ձեւով պատասխանել: Յարգանք եւ փառք անոնց յիշատակին: Եւ Մեծ Եղեռնը մտցուցին անոնք: Նայեցէք զանազանութիւնը՝ «Մեծ Եղեռնի Յուշարձան», բայց երեսուն տարի վերջ Երեւանի մէջ կառուցուեցաւ թանգարանը՝ «Հայոց Ցեղասպանութեան Թանգարան»: Լեզուաբանական փոփոխութիւն մը կայ:

Հիմա այստեղ հարց մը կայ, որուն մասին կարելի էր ոչ թէ մէկ այլ երկու, երեք դասախօսութիւն, սեմինար կազմակերպել: Շատ համառօտ ըսեմ. նախ հայերէն ցեղասպանութիւն բառը՝ որ կը նշանակէ ցեղի մը կամ տոհմի մը, ազգի մը սպանդը, իմ կարծիքով ճշգրիտ թարգմանութիւնը չէ Միացեալ Ազգերու Կազմակերպութեան կողմէ 1948 թուականին ընկալուած բանաձեւին: Այդ պայմանագրութիւնը կը կոչուի Genocide Convention: Ռաֆաէլ Լեմքին՝ այդ լեհացի հրեայ մարդը, իրաւաբանը, Genocide բառը հնարած է՝ ներշնչուելով նախ եւ առաջ հայոց ցեղասպանութենէն: 1930-33 թուականէն արդէն սկսած է բառին վրայ մտածել: Եւ ինչո՞ւ: Որովհետեւ գոհ չէ գերմանական Völkermord բառէն, որ կը նշանակէ ժողովրդասպանութիւն, ժողովուրդ մը սպաննել, որ շատ ցնցիչ, ուժեղ բառ մըն է: Նոյնիսկ Լեփսիուս կը գործածէ Völkermord բառը հայերու առնչութեամբ 1919-21 թուականներուն: Բայց Լեմքին գոհ չէ այդքանով, որովհետեւ պարզապէս ժողովուրդը չէ որ սպաննուած է, այլ կարծես գոնէ ուզած են ցեղը, այսինքն տոհմը սպաննել, «ցեղ»-ը ոչ թէ բուն race իմաստով, այլ այն իմաստով որ Վարուժան գրած է *Ցեղին սիրտը*: Իտալերէնը, օրինակ, ունի երկու բառ, razza՝ որ race-ն է, եւ stirpe՝ որ այդ տոհմային իմաստով ցեղն է: Հիմա ինչ որ Միացեալ Ազգերու կողմէ որդեգրուած է՝ այս չէ: Միացեալ Ազգերու սահմանումին մէջ առարկան ո՛չ ցեղն է, ո՛չ ազգն է: Խումբ մըն է՝ a group, եւ յստակուած չէ, 60 տարի է արդէն, թէ group ինչ կը նշանակէ: Հինգ հոգի ալ կրնայ group մը կազմել: Որոշ ցեղասպանութեան տեսաբաններ, մասնագէտներ, նոյնիսկ կ՚ըսեն երկու հոգի վստահ group է բայց կ՚ըսեն մէկ հոգի ալ կրնայ group ըլլալ եթէ այդ շարժառիթները մտնեն: Որով Միացեալ Ազգերը ինչպէ՞ս կը սահմանէ group-ը: Եւ Միացեալ Ազգերը այս շատ լայն սահմանը որդեգրած է այն մտահոգութեամբ՝ որ արմատախիլ ընէ նման արարքի ամէն հնարաւորու-

թիւն: Բայց այդ ալ ի զուր. «Մարդակեր գազան մարդը՝ դեռ երկար էսպէս կը մնայ...», Յովհաննէս Թումանեանի վերջին տողն է: «Մարդակեր գազան մարդը», կ'ըսէ:

Նաեւ կարգախօս մը կայ՝ «պէտք է խօսիլ որպէսզի չկրկնուի»: Եթէ հայոց ցեղասպանութեան մասին շատ չէ խօսուած, բայց հրեաներու մասին ամէն օր կը խօսուի, խօսուած է եւ պիտի խօսուի: Եւ սակայն Ի. դարու երկրորդ կէսին ցեղասպանութիւնները շատ աւելի եղած են եւ ահաւոր, վերջինը Ռուանտա-յինը յիշենք: Զիս չափազանց տպաւորած է Պիաֆրայի ցեղասպանութիւնը, որուն մասին այլեւս մարդ չի խօսիր, բոլորովին մոռցուած է արդէն: Երկու միլիոն մարդ ջարդեցին, մեռցուցին: Ես Գերմանիա էի, 24-25 տարեկան էի, ամէն օր կը խօսուէր ատոր մասին: Քաղաքականութիւնները ատելի, զազրելի, նողկալի երեւոյթներ են: Գերմանական Քարիթասը՝ այսինքն ողորմութեան, գթութեան կաթողիկէ եւ բողոքական կազմակերպութիւնը, երեք օրուան ըն-թացքին 10 միլիոն մարք (այն ժամանակուայ մարքով, գուցէ քանի մը 100 միլիոն եւրօ այսօր) հաւաքեց սա լոզունգով. «Մարդու մը կեանքը ծխախոտի տուփ մը չ'ա՞րժեր» (ծխախոտի տուփը մէկ մարք կ'արժէր այն ատեն): 10 միլիոն մարք հաւաքեցին երեք օրուայ մէջ: Բայց նոյն այդ օրերուն, գերմանա-կան պետութիւնը, իտալական պետութիւնը, Ֆրանսան, Անգլիան, Ամերիկան զէնք կը ղրկէին, ամէն օր զէնք կը ղրկէին Նիժերիա որպէսզի մորթեն, ջարդեն պիաֆրացիները: Դժբախտաբար այս է: Տխուր իրականութիւն, շատ տխուր իրականութիւն է: Այնպէս որ խօսելով ալ չի բուժուիր խնդիրը: Պէտք է ուղղակի քաղաքական հարցադրոյթ ունել: Ինչպէս այսօր Սուրիոյ մէջ կը պատահի, օրի-նակ: Ո՞վ կը համարձակի այսօր քննադատել արեւմուտքի Սուրիոյ մէջ վարած քաղաքականութիւնը: Ո՞վ կը համարձակի բացէ ի բաց խօսիլ: Շատ քիչեր:

Փակագիծ մը բանամ: Անցեալ տարի, Իտալիոյ մէջ հանդիպեցայ Արտաքին Գործոց Նախարարութիւն աշխատող հինէն ծանօթ տիկնոջ մը: Սուրիոյ տագ-նապը կար, արդէն Հալէպն ալ սկսած էր կործանիլ: Կը խօսինք, կը նայիմ որ գրեթէ ամէն բանով նոյն բաները կը խորհինք: Ըսի (առանձին կը խօսէինք, մտերմաբար). «Կը ներես, դուն ձեր նախարարութեան սպիտակ լա՞նջքն ես, թէ՞ ուրիշներ կան, գոնէ ուրիշներ»: Գիտէ՞ք ինչ կ'ըսէ. «Մեծամասնութիւնը ինծի պէս կը խորհի»: «Ինչո՞ւ չէք խօսիր, բան մը չէք ըսեր» ըսի: «Արգիլուած է» պատասխանեց, «ամերիկեան պաշտօնական քաղաքականութեան դէմ կարծիք չենք կրնար յայտնել, գոնէ պաշտօնապէս, հրապարակաւ»: Այսքան:

Այս բոլորը կ'ըսեմ նաեւ սրտցաւ, ասիկա Իտալիոյ մէջ ալ շատ ըսած եմ, որովհետեւ ժողովուրդները դեռ կը հաւատան տեմոքրաթութեան, ազատու-թեան, խօսքին: Անգամ մը Թուրքիոյ մէջ բանտ մտած մարդոց ծանօթացայ:

Մէկը չորս տարի նստեր էր, միւսը չորս ամիս: Այս աւելի բախտաւոր եմ կ'ըսէր: Ըսի. «Ես ձեզի հանդէպ ոչ միայն յարգանք, ակնածանք ունիմ, որովհետեւ ես կ'ապրիմ երկրի մը մէջ ուր կարծիք յայտնելը, գոնէ դեռ առ այժմ (մաղթենք այսպէս մնայ, բայց որոշ կասկածներ ունիմ), կը նմանի բաժակ մը սուրճ կամ թէյ խմելու, կամ ինչ գիտնամ քոնեաք կամ ուիսքի խմելու»:

Ինչեւիցէ: Աhաւասիկ այս է կացութիւնը: Խօսելով չէ որ կը բուժուի: Ամէն պարագայի ՄԱԿ-ը կը նշէ group-ի մը սպանութիւնը: Ասիկա տեսականօրէն կը նշանակէ, որ, օրինակ, որեւէ հաւաքուած խումբ՝ նոյն էթնիք ազգային միաւորին կամ նոյն քաղաքացիութեան պատկանող (օրինակ, բոլորը Ֆրանսայի քաղաքացի, Իտալիոյ քաղաքացի կամ Հայաստանի քաղաքացի), կամ նոյն կրօնքին պատկանող (քրիստոնեայ, իսլամ կամ պուտտայական), եւ կամ նոյն ցեղին պատկանող (սպիտակամորթ կամ սեւամորթ), եթէ խմբային շարժառիթներէն որեւէ մէկուն պատճառով այստեղ գայ եւ սպաննէ ներկաները՝ որոնք բոլորն ալ ազգութեամբ հայ են, ըստ Միացեալ Ազգերու արդէն ցեղասպանութիւն գործած կ'ըլլայ: Մինչդեռ Ռաֆաէլ Լեմքինի սահմանը ասիկա չէ: Մեր պարագային, առարկան, ոճիրին առարկան նոյն ինքը ամբողջ ազգն է: Ճիշդ է որ ցեղասպանութիւն բառը միջազգային առումով իրաւական մեծ նշանակութիւն ունի, թէեւ այսօր շատ մը մասնագէտներ կը ջանան զայն բացատրել ըսելով, թէ կայ նաեւ crime against humanity՝ մարդկութեան ոճիր: Կ'ուզեն այն կէտին հասնիլ որ ամէն քայլ against humanity գրեթէ ցեղասպանութիւն (Genocide) նկատուի այդ սահմանուած առումով, այսինքն խումբի մը որոշ պատճառներով չքացումը: Այս պատճառով է որ Մեծ Եղեռն բառը ինծի շատ յարգի, շատ գեղեցիկ բառ մը կը թուի (բացի յաճախ գործածուած «ջարդ» բառէն, մեր ժողովուրդը զայն կոչած է «աղէտ»: Օրինակ, Օշականը «Աղէտ» կը կոչէ՝ գլխագրով գրուած, կամ «Մեծ Աղէտ»-ը: Կար նաեւ «Մեծ Եղեռն»-ը՝ որ յետոյ երբ յուշարձանը կառուցուեցաւ պաշտօնականացաւ: Գոնէ 10-20 տարի ամէնքը կը խօսէին Մեծ Եղեռնի մասին): Ինչո՞ւ: Որովհետեւ ամէն դէպք որ կը պատահի արդէն եզական է: Հիմա մեր սա հաւաքը եզական է, եթէ վաղը դարձեալ այստեղ հաւաքուինք նոյն հաւաքը չէ արդէն, տարբեր հաւաք է: Եթէ նոյնիսկ նոյն նիւթը պատմեմ, նոյն անձերով, տարբեր է, ժամանակի մէջ տարբերած է արդէն: Պատմական ամէն արարք իր ինքնութիւնը, իր եզականութիւնը, իր եզակիութիւնը ունի: Առաւել եւս այնպիսի ահաւոր ողբերգութիւն մը ինչպէս է ցեղասպանութիւնը: Բնականաբար, որոշ հրեայ մտաւորականներ չափազանցած են այս ուղղութեամբ ըսելով թէ՝ Շօան կամ Հոլոքօսթը միս մինակ դէպք մըն է որ նմանութիւն չունի: Այո, ինչպէս ամէն պատմական արարք, կասկած չկայ որ ան իր եզակիութիւնը ունի, այնպէս ինչպէս հայոց ցեղասպանութիւնը,

Ռուանտայի ցեղասպանութիւնը, Պիաֆրայի ցեղասպանութիւնը, կամ որեւէ կարգի արարք: Եւ այդ պարագային, ժողովուրդի կողմէ գործածուիլ սկսած որոշ բառեր կը դառնան յատուկ անուն: Օրինակ, շատ աւելի պարզօրէն, այստեղ ամէնքս մարդ ենք (այր կամ կին, տղամարդ կամ կին), մարդ էակին կը պատկանինք, հետեւաբար «մարդ»-ը հասարակ անուն է: Հիմա ըսելով թէ Մաքրուհին մարդ է, կամ Մաքրուհին կին է, Արամը տղամարդ է, բան մը չըսինք: Ինչո՞ւ յատուկ անուն կը դնենք: Այդ անձին անպեղելի խորութիւնը արտայայտելու համար: Եւ այս է արուեստը. հանճարեղ արուեստագէտը: Օրինակ, Թինթորեթթոյի մը դիմանկարը, կամ Ռոտէնի մը քանդակը, ահաւասիկ այդ մարդուն խորհուրդը կը ստեղծէ, այդ անձին, այդ եզակիին, եւ որքան արուեստագէտը կը յաջողի եզակիի խորհուրդը յայտնաբերել, այնքան աւելի հանճար է ուրեմն: Այս է արուեստի մեծութիւնը: Հետեւաբար, իմ կարծիքովս, Մեծ Եղեռն բառը աւելորդ բառ մը չէ, Մեծ Եղեռն եւ ցեղասպանութիւն բառերը իրար կը լրացնեն, փոխլրացուած գործառոյթներ են: Ցեղասպանութիւնը հասարակ անուն է, ինչպէս Մաքրուհին մարդ է, Արամը մարդ է, եւ այլն: Բայց ամէնքը անուն մը ունին եւ այդ Մաքրուհին, Պետրոսը, Պօղոսը, Թորոսը, Ազատուհին անկրկնելի երեւոյթներ են իբրեւ մարդ: Նոյնն է նաեւ մեր պարագային: Ամէն ցեղասպանութիւն անկրկնելի է եւ ասիկա մեզի առիթ կու տայ նաեւ որ մենք մի քիչ աւելի խորանանք:

Յիսուն տարի գրեթէ թիւերու մարզանք ըրինք, բարեբախտաբար մէկ ու կէս միլիոնի վրայ կեցանք: Մենք 1965-ին մէկ միլիոնով սկսեր էինք, ոմանք երկու միլիոնի հասցուցին, բարեբախտաբար ատիկա չընդհանրացաւ: Թիւը չէ հարցը: Մեր Մեծ Եղեռնի ամենէն ահաւորը, այդ «ահաւոր բան»-ը՝ որուն մասին Թէքէեանը կը խօսի, այն է որ մենք արմատախիլ եղանք մեր հողէն: Այս է մեր լինելիութիւնը, այս է ահաւորը: Նոյնիսկ հրեաներու ողջակիզումը՝ որքան ցաւալի, որքան ահաբեկիչ, որքան եղերական, բայց Հաարեցի վրայ չէր, Հաարէց-Իսրայէլը չէր, Իսրայէլի մշակոյթի օրրանը, հողը չէր, ազգի մը օրրանը չէր, այլ Գերմանիոյ կամ Լեհաստանի տարածքին էր: Ասիկա կ'ըսեմ առանց հաւակնութիւններու, առանց միւսին ցաւը չքացնելու, բայց հասկնալու համար թէ ինչ եղած է: Եւ եթէ ենթադրենք սա պահուս լուր հասնէր Անգարայէն, բոլոր լրասփիւռները ըսէին՝ որ թրքական կառավարութիւնը, խորհրդարանը որոշում կայացուցած է, օրէնք ընդունած է թէ բոլոր հայերը որ կը փաստեն թէ շառաւիղ են այդ զոհուածներուն, կրնան վաղը արդէն վերադառնալ իրենց բնօրրանները: Ըստ իս բան մը չի փոխուիր: Որովհետեւ պատմութիւնը մէկ անգամ ընդմիշտ խզուած է արդէն: Նոր կեանք մը պիտի վերսկսին, նոր հայութիւն մը, նոր կենցաղ մը պիտի գոյանայ այնտեղ, պիտի կարենան ներշնչուիլ աւանդոյթէն, բայց

պիտի մնայ վէրքը, այնպէս ինչպէս եթէ զաւակը երթայ մահացած հօրը տան մէջ կրկին բնակելու՝ չի նշանակեր թէ հայրը յարութիւն առած է, հայրը մեռած է ընդմիշտ: Այս է նաեւ պատմական երեւոյթին անկրկնելիութիւնը:

Եւ այստեղ, այս բոլորը ըսելէն վերջ, այլեւս մեծ ուրախութիւն մը եղաւ ինծի համար այս համագրին մէջ, այս շրջագիծին մէջ, Մայր Աթոռի կայացուցած որոշումը՝ որ մեր նահատակները հաւաքաբար սրբադասեն, իբր քրիստոնեայ նահատակներ: Ասիկա մեծ բան մը եղաւ, նաեւ որովհետեւ այս յոյսը գրեթէ չքացած էր մէջս, որովհետեւ շատ-շատերու հետ խօսելով վարանումներ, նոյնիսկ առարկութիւններ, դիմադրութիւններ լսեր էի: Առջի օր Վեհափառ Տէրը բարեհաճեցաւ ունկնդրութիւն մը շնորհել, առաջին խօսքս այս եղաւ. «Վեհափառ Տէր, այս կայացած որոշումը Աստուծոյ պարգեւն է մեր ժողովուրդին»: Այո, Աուշվիցէն վերջ կարելի չէ Աստուծոյ մասին խօսիլ: Ճիշդ է, այնպէս կը թուի որ Աստուած մեզ բոլորովին թողլքած, մոռցած, գիրքէն ջնջած է: Ինչպէս երբեմն անձնական կեանքի նոյնիսկ խորին դժբախտութեան պահուն կը զգանք որ բան մը կայ, ձեռք մը կայ որ կը բռնէ եւ կ’առաջնորդէ, նոյնն է նաեւ ահաւասիկ հաւաքական կեանքին մէջ: Եւ կը կարծեմ, որ աստուածային նախախնամութեան այդ նշաններէն մէկն է այս որոշումը եւ մաղթենք որ ի կատար ընթանայ որովհետեւ իսկապէս ասիկա մեր վրայ ահաւոր պատասխանատուութիւն մըն ալ կը դնէ՝ թէ մենք ի՞նչ աստիճան այդ երանելի նահատակներուն զաւակներն ենք:

Քանի մը տարի առաջ Երեւանի հեռուստատեսութեան մէջ, կարծեմ Հ1 ալիքով, հարցազրոյց մը կար սրբազանի մը հետ: Այդ պահուն փորձութիւն եկաւ մէջս որ հեռաձայնը առնեմ եւ շնորհաւորեմ զինքը: Բայց յետոյ երբ զինքը տեսայ Հայաստանի մէջ, ըսի. «Բերանդ պագնեմ, սրբազան»: Ի՛նչ ըսաւ մարդը. «Հիմա չեմ յիշեր թէ բուն նիւթը ինչ բանի մասին էր: Բայց մեր Եղեռնէն վերապրած նախնիքը օտար ափերով հոգեւոր հայրենիք կերտեցին: Իսկ մենք մեր ոտքերի տակ մեր հայրենիքը, մեր հողը ոտնակոխ ենք անում»: Ծանր խօսք է: Բայց բոլորիս համար, ո՛ւր կ’ուզենք ըլլանք՝ Հայաստան կամ ի սփիւռս աշխարհի, այդ մարդոց օրինակը մեր վրայ ահաւոր պատասխանատուութեան մը ծանրութիւնը կը դնէ: Ասիկա մեր գիտակցութեան մաս պիտի կազմէ: Եւ ուրեմն այս է մարտահրաւէրը:

Հետեւաբար, ամենէն առաջ այն մերձեցումով մօտենանք Եղեռնին՝ որ իսկապէս յաղթանակ մը եղած է, որովհետեւ հայ ժողովուրդը բնաջինջ չէ եղած: Թուրքիոյ քաղաքացի, թրքահպատակ անձ մը ժամանակին կը պատմէր ինծի, որ երբ 1956-57 թուականներուն առաջին անգամ Եղեռնի յիշատակութիւններ սկսան կատարուիլ Եւրոպայի մէջ, կ’երթայ անձնագիրը նորոգելու: Հիւպատո-

ար շատ զայրացած է, կ’ուզէ անձամբ հետը խօսիլ: Կը մտնէ ներս, հիւպատոսը կ’ըսէ. «Լսեցինք որ դուն ալ այդ յիշատակութեան կամ սգահանդէսին մասնակցած ես»: Կը պատասխանէ. «Այո, մեռելները յիշեցինք, մեռելներու ոգեկոչում կատարուեցաւ, ես ալ հոն էի, իմ ընտանիքիս մէջ ալ մեռեալներ կան»: Հիւպատոսը կ’ըսէ. «Մենք մէկ սխալ գործեցինք, որ մէկ հոգի ողջ ձգեցինք»: Յետոյ, բնականաբար, հիւպատոսը կ’անդրադառնայ, ներողութիւն կը խնդրէ. «Կը ներես, ահաւոր զայրոյթի մը մէջ էի, ներողամիտ եղիր, մոռցիր ըսածս», եւ այլն: Խնդիրը այն չէ: Հարցը այն է որ հակառակ որ հայ ժողովուրդին ուզեցին բնաջնջել այդ ժողովուրդը ապրեցաւ: Բայց ոչ թէ գործադիր մարդուն սխալով այլ ժողովուրդին նահատակութեան ոգիով: Յարգանք քեզ, նահատակ ժողովուրդ: Այս ալ Աւետիս Ահարոնեանին մէկ գրութիւնն է. «Յարգանք քեզ, նահատակ ժողովուրդ»: Ամէն նահատակ յարգանքի արժանի է: Ինքնութիւնը չուրանալը մեծ բան մըն է, շատ մեծ առաքելութիւն մըն է, գուցէ առաքելութիւններուն...: Անոր համար է որ բոլոր քրիստոնեայ եկեղեցիները սրբադասած են միշտ մարտիրոսները: Ինչո՞ւ: Ոչ թէ որովհետեւ կը մեռնին այլ որովհետեւ կ’ապրեցնեն, իրենց մահով կ’ապրեցնեն: Եթէ չմեռնէին արդէն քրիստոնէութիւնը վերջացած կ’ըլլար: Նոյնն է մեր ժողովուրդի պարագային:

Եւ հուսկ նաեւ այս ալ ըսեմ՝ որ այստեղ, հայ մայրերուն մեծ կարեւորութիւնը (ինչպէս Եղիշէ կ’ըսէր՝ «Տիկնայք փափկասունք»), որովհետեւ մեծ մասամբ այդ մայրերն են, կանացի սերունդն է որ նոր սերունդը հասցուցած է եւ շատ պզտիկներ չեն բնաջնջուած աղջկան տարազ հագուեցնելու համար: 6-7 տարեկան, նոյնիսկ 8-9 տարեկան մանչուկներու շատ նկարներ կան, ուր մանչուկներուն աղջկայ հագուստ հագուեցուցած են որպէսզի մարդիկը խաբուին, քանի որ կ’ուզէին աղջիկները կանանոց տանիլ յետագային պսակելու կամ նշանելու համար: Ահաւասիկ այստեղ հայ կնոջ դերն ալ ահաւոր խոշոր դեր մը եղած է, շատ մեծ դեր մը եղած է: Գուցէ դեռ մենք հաւաքաբար այդ ալ լրիւ պէտք է գնահատենք:

Հուսկ վերջին խօսք մը: Բնականաբար, մենք յաճախ կը խօսինք պահանջի մասին: Որքան գիտեմ, թուրք լրագրողի մը հետ հարցազրոյցի մը ընթացքին, մեր նախագահներէն մէկը ըսած է. «Բաւ է դուք ընդունիք՝ մենք պահանջ չունինք, չենք ունենար»: Բնականաբար, այստեղ նախ փիլիսոփայական եւ հայեցակարգային հարց մը կայ, զուտ տեսական հարց մը, որ երբոր յանցանք մը կայ պէտք է ըլլայ հատուցում որպէսզի այդ յանցանքը գայ, այլապէս յանցանք չկայ: Բայց կրնամ ըսել, որ վերջապէս ես այնքան մեծահոգի եմ կամ այնքան բարեսիրտ եմ, որ ընդունելով քու ներողութեան հայցդ՝ իբրեւ հատու-

ցում, կը ներեմ: Այս կարելի է: Բայց պէտք է յստականայ այս հարցը: Գաղափարներու յստակութիւնը կարեւոր է:

Այս հարցը արդէն արծարծուած էր Երեւանի 2005-ի գիտաժողովին՝ որ տեղի ունեցաւ Եղեռնի առթիւ (գիտաժողովին ճիշդ վերնագիրը չեմ յիշեր, կը ներէք քիչ մը ծերութեան նշան է որ վերնագիրները երբեմն կը վրիպին): Այդ ժողովի ընթացքին այս հարցը արծարծուեցաւ եւ այնտեղ երկու կարծիք յայտնուեցաւ: Մէկը կ'ըսէր որ նախ Թուրքիան ճանաչումը կատարէ յետոյ մենք կը յստակենք մեր պահանջները: Անկեղծօրէն ես այս կարծիքէն չեմ, այնտեղ ալ հակադրուած էի այս կարծիքին: Մեզմէ որեւէ մէկը, կամ երկրի որեւէ պատասխանատու մը՝ վարչապետ, պետ կամ ղեկավար, չէր կրնար 90 կամ 100 տարի մերժումէ վերջ բաց թեւերով ծովը նետուիլ անծանօթ ջուրերու մէջ՝ առանց գիտնալու թէ հետեւանքը ինչ կ'ըլլայ: Կը կարծեմ թէ այլեւս պահանջ մըն է՝ որ եթէ մենք որեւէ փոխհատուցման խնդիր ունինք Թուրքիոյ հետ, սահմանենք թէ ինչ է այդ փոխհատուցումը: Եւ փոխհատուցումը ըլլայ ոչ մտացածին, ոչ երեւակայական, ոչ զգացական, ոչ ռոմանթիք, այլ միջազգային իրաւունքի գործող սահմաններու մէջ (վերջապէս այլեւս ցեղասպանութեան գրեթէ օրինակարգ մը կայ): Եւ նաեւ այնպէս ըլլայ որ պահանջող կողմը, պահանջատէր կողմը, յետագային գրեթէ ձեռնունայն չմնայ, ինչպէս քիչ առաջ տուած օրինակս վերադարձի հարցին առնչութեամբ:

Ճիշդ այս օրերուս էր դարձեալ, գիտաժողովի մը նախօրեակին, երբ երկրին կարեւոր դէմքերէն մէկը, անհատական մտերմիկ զրոյցի մը ընթացքին կ'ըսէր (չեմ կարծեր որ սխալած ըլլար). «Լեւոն, ի՞նչ ես կարծում, քանի՞ հայ կը վերադառնայ եթէ Թուրքիան արտօնէ որ վերադառնան»: Ես պատասխանեցի. «Առաւելագոյնը տասը հազար»: Ինքը ըսաւ. «Եթէ հինգ հարիւր մարդ վերադառնայ, ուզած զրաւիդ կը մտնես»: Հիմա այս է հարցը, թէեւ բնականաբար չեմ ըսեր թէ վերադարձի հարց մը չըրուի:

Եթէ կ'ուզէք իմ անձնական կարծիքս, ուրեմն 2006-ին, Պոլսոյ պետական համալսարանը՝ որ ըստ աւանդութեան Ֆաթիհ Սուլթան Մեհմէտի կողմէ հիմնուած է, գիտաժողով մը կազմակերպեց: Անաչառ ըլլալու համար պէտք է ըսեմ, որ հրաւիրուած էր հայ եւ ոչ հայ 30 կամ 32 հոգի, մարդիկ որոնք բացայայտօրէն գրած էին թէ ցեղասպանութիւն եղած է, ընդ որս Իվ Թերնոն եւ այլ ծանօթ մարդիկ: Հայ հրաւիրեալներէն գացած էին լրնտոնաբնակ Արա Սարաֆեանը եւ ստորագրեալս՝ ձեր համեստ ծառան: Հրեաներէն՝ Իսրայէլ Չարնին եւ Եաիր Աուրոն: Ասորի մը կար Պէյրութէն եւ Կաւնթը կար՝ որ կարծեմ Շուէտիայէն եկած էր: Վեց հոգի էինք ընդամէնը: Միւսները չէին եկած: Գիտաժողովի նախորդ իրիկունը Պոլսոյ ծանօթներու գացեր էի: Երբ ընտանե-

կան սեղանի մը շուրջ հաւաքուեր էինք, ըսին. «Վարդապետ, վաղը քեզի համար շատ պիտի աղօթենք»: Հիմա, Հրանդ Տինքի սպանութենէն վերջ, ես ինքս խորհեցայ՝ որ հակառակ ոստիկանական ծայր աստիճան հսկողութեան (սրահ մտնող անձը երեք քննութենէ կ՚անցնէր, բոլոր ստուգումները կը կատարուէին), սրահէն դուրս, փողոցին անկիւնը մէկը դիմացդ կրնար ելլել: Այդ ժամանակ, տակաւին, բարեբախտաբար Աստուծմէ, այդ կասկածը չունէի:

Ինչեւիցէ, գացինք հոն եւ խօսեցայ: Սրահին մէջ 350-360 հոգի ներկայ էր: Չորս հայ կար, իրար կը ճանչնայինք: Պէտք է ըսեմ, որ խօսքիս աւարտին 50-ի չափ մարդ ծափահարեց: Առաջին գիծին վրայ նստած մարդ մը, դեռ չէի գիտեր ով է, նոյնիսկ ելաւ շնորհաւորեց: Յետոյ տեղեկացայ որ այդ մարդը ժամանակին պաշտօնազուրկ եղած հեռուստատեսութեան ընդհանուր ղեկավարն է եղեր: Ուրեմն, շատ կարեւոր անձնաւորութիւն մը: Չկրցայ հասկնալ թէ ինչ պատճառով պաշտօնազուրկ եղած է, հաւանօրէն կարծիքներու տարբերութեան կամ կուսակցական պատճառով:

Եւ այդ գիտաժողովի ժամանակ երեք հատուցման կէտ ըսի.

1. Ամէն բանէ առաջ, բոլոր այն հայերը որոնք կը փափաքին վերադառնալ եւ ապրիլ իրենց պապենական հողերուն վրայ, ունենան այն նուազագոյն իրաւունքները որոնցմով կ՚ապրէին Օսմանեան Կայսրութեան մէջ: Ուրեմն այս ալ չմոռնանք՝ որ Օսմանեան Կայսրութեան մէջ մենք իբրեւ միլլէթ, իբրեւ ազգ ճանչցուած էինք: Դեռ իմ անձնագրիս վրայ պաշտօնապէս հայ գրուած էր: Եւ ուրիշ երկիր մըն ալ կար, մեծ մասիդ շատ ծանօթ երկիր մը՝ Սովետ Միութիւնը, որ զիս պաշտօնապէս իբր հայ կը ճանչնար: Ինձ համար մեր հաճոյք էր, երբ սովետական վիզայի անքեթան կը լրացնէի, առաջին հարցումը քաղաքացիութիւնդ էր, որմէ անմիջապէս վերջ՝ ազգային ինքնութիւնդ (ես ռուսերէն պիտի չկարենամ ըսել՝ դուք գիտէք թէ ինչ էր այդ բառը): Եւ ես մեծ հպարտութեամբ կ՚ըսէի, որ այդ ահռելի կայսրութիւնը զիս իբր հայ կը ճանչնայ իսկ Իտալիան կամ Ֆրանսան զիս պաշտօնապէս հայ չի ճանչնար: Ոմանք կ՚ըսեն, թէ պէտք չէ ազգութիւնը ճանչցուի որպէսզի discrimination, խտրականութիւն տեղի չունենայ: Բայց կայ նաեւ positive discrimination-ի, դրական խտրականութիւն գաղափարը կայ, որ, գիտէք, Ամերիկայի մէջ լոզունգ դարձած է այլեւս: Ինչ որ է: Ուրեմն, որեւէ հայ մարդ կրնայ նուազագոյնը այն իրաւունքներով ապրիլ հոն որով կ՚ապրէր Օսմանեան Կայսրութեան ընթացքին, առաւել, անշուշտ, ներկայ իրաւական պետութեան մը շնորհած անհատական իրաւունքներով, ինչպէս նաեւ համայնքային իրաւունքներով:

2. Երկրորդ, յուշարձաններու փրկութիւնը: Շատ կարեւոր երեւոյթ մըն է: Գիտէք, շարունակուող դատեր կան: Բոլոր իրաւազրկուած հայերը իրենց

ապահովագրութեան թուղթով կրնան որոշ հատուցումներ ստանալ: Փառք Աստուծոյ, հայերու մեծ մասը՝ մանաւանդ արեւմուտքի մէջ, դիրքերնին շտկած են: Փառք Աստուծոյ, արեւմուտքի մէջ հացի կարօտ հայ չեմ տեսած: Ի հարկէ ունինք աղքատախնամներ: Եթէ նոյնիսկ դրամական եկամուտ մը պիտի ըլլայ, պէտք է, իմ համեստ կարծիքով, հասարակաց գանձանակ մը ըլլայ որ ամենէն վստահելի մարդոց կողմէ ղեկավարուի եւ հայ ժողովուրդին համար ըլլայ: Ինծի ծանօթ ընտանիքներ կան որ նոյն ինքն այս մայրաքաղաքին մէջ գրեթէ նկուղներու մէջ կ'ապրին: Ես մի քանի հատը կը ճանչնամ, գուցէ աւելի շատ են: Հետեւաբար, այսօր մեր հարցը հայ քսակաւորները աւելի քսակաւոր դարձնել չէ: Եթէ մեր նպատակը հայ ժողովուրդին օգնել չէ, աւելորդ է...: Ուրեմն, յուշարձաններն ալ շատ կարեւոր հարց մըն է: Մեր ինքնութիւնն են, մեր վկայութիւնն են: Նաեւ մարդկութեան յիշողութիւնն են: Քիչ առաջ նշեցի Անաթոլի Եաքոպսոնի խօսքը. «Համաշխարհային քաղաքակրթութեան ամենացնցիչ երեւոյթներէն մէկն է»:

Փառք Աստուծոյ որ Աղթամարը նորոգուեցաւ: Եւ այնտեղ դրուագ մը պատմեմ, որովհետեւ ոմանք ամբողջ մեքենայ մը լարեցին որ հայերը չերթան Աղթամարի բացումին: Ես գացի: Մէկ քանի ծանօթ դէմքերու հանդիպեցայ: Գիտէք, Արածանիի այդ կամուրջը որ կայ, երերուն կամուրջը: Ճիշդ այդ կամուրջին վրայ դէմ դիմաց եկանք: «Հայր Լեւոն, ի՞նչ գործ ունիս այստեղ»: «Է՜հ» ըսի, «ես դաւաճան մարդ եմ, իմ գործս այստեղ է: Դո՞ւք ինչ գործ ունիք այստեղ»: Լաւ, հիմա շատ լուրջ բաներ չխօսինք: Ինչ որ է, այդ երերուն կամուրջին վրայ ողջագուրուեցանք, փաթթուեցանք: Ահաւասիկ: 90 տարի քանդելէ վերջ, ժեստ մը ըրած էին: Բաւական լաւ վերանորոգում մըն է: Տեսայ նաեւ Իսհաք փաշայի պալատը՝ որ մեր հին տարրոյթն է: Արշակունեաց պալատն է ատիկա: Ան յետոյ քանդուած է, կրկին վերաշինուած 17-րդ դարու ընթացքին: Իրականութեան մէջ անիկա այսօր վերանորոգուած չէ որովհետեւ մեկենասը, դրամը տուողը, տարբեր վերանորոգում, այսինքն նմանակումի վերանորոգում ուզեր է: Ինչեւիցէ, ըստ իս կարեւոր բան մըն է որ այս մեր յուշարձանները...: «Յուշարձաններ, յուշարձաններ» իմ ամենասիրած երգերէս մէկն է, ոչ միայն եղանակին որքան բառերուն եւ յուշարձանի գաղափարին համար:

3. Երրորդ, բանալ բոլոր տոհմատետրերը: Որովհետեւ գիտէք, տոհմատետրերը արեւելեան երկիրներու մէջ պետական գաղտնիք են: Որքան տեղեկացած եմ, կարծեմ Հայաստանի մէջ ալ բոլոր տոհմատետրերը բաց չեն: Երբ այդ տոհմատետրերը բացուին, մեր պատմութիւնն է որ դուրս պիտի գայ, նաեւ ընտանեկան պատմութիւնը:

Այս դրուագով վերջացնեմ, շատ խօսեցայ: Զինուորութեան պիտի երթամ: Այն ժամանակ՝ 1970 թուականին, օրէնք կար Թուրքիոյ մէջ, որ եթէ ընտանիքիդ մէջ երեք սերունդ օտար կին կայ՝ օրինաւոր ամուսնութեամբ, համակեցութեամբ կամ նոյնիսկ իբրեւ հոմանի, չէիր կրնար սպայի կարգավիճակ ունենալ: Տոհմածառը պիտի բանային եւ ստուգում պիտի կատարէին: Ինչ որ է, գացի հոն եւ քիւթիւքը բացուեցաւ: Քիւթիւք կ'ըսեն, ընծայատետր, որ նաեւ ընծայամատեան թարգմանած է մեր Գէորգ Տէր Վարդանեանը: Այդ քիւթիւքը շատ կարեւոր բան մըն է բոլոր արեւելեան մշակոյթներուն մէջ (մենք ալ ունինք՝ Սիմէոն Կաթողիկոսը): Քիւթիւքը ծառին բունն է, բառին իմաստը այդ է: Ահաւոր տետր մըն էր, սա մեծութեամբ [*Հայր Լեւոն իր ձեռքերով ցոյց կու տայ տետրին չափը*] տետր մըն էր, արաբական տառերով գրուած: Մէկը չկար կարդացող: Թոշակառու մէկը խոշորացոյցով եկաւ՝ որ յատուկ հոն կը մնար այդ գործը ընելու համար: Ես ի՛նչ տեսնեմ. էջը ամբողջ բացուած է, էջին ստորոտը հօրս անունը գրուած է (անշուշտ չեմ կրնար կարդալ արաբական տառերով), իմ եւ եղբօրս անունը գրուած է, ալ տեղ չկայ էջին տակը, իսկ ծառը կը բարձրանայ բոլոր էջին երկայնքով: Եւ այդ մեր ընտանիքն է: Այո, տոհմածառ ահաւասիկ: Ատիկա քիւթիւքն է: Բայց ասոնք պետական գաղտնիք են: Ստոյգ գիտենք՝ որ մինչեւ Սեւրը իրական գաղտնիք են: Եւ այս բոլորը բացուին: Ահաւասիկ, կարելի է ըստ միջազգային իրաւունքի օրէնքներու պահանջներ դնել, որ թէ՛ մեր ժողովուրդին օգտակար ըլլայ եւ թէ՛ նաեւ մեր համեստ լուման դնենք ընդհանուր համամարդկային մշակոյթին:

Շատ շնորհակալութիւն:

ՄԵՐՈՒԺԱՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ - Շնորհակալութիւն, Հայր Լեւոն: Մինչեւ հարց տալը, մի բան ասեմ, զուտ եզրաբանական իմաստով: Հայր Լեւոնը որ ասում է քիւթիւքը, իրականութեան մէջ այս դէպքում նկատի ունի ոչ թէ բուն ընծայամատեանները եւ աւանդական քիւթիւքները այլ սեփականութեան դեֆտէրները: Երեւի կը յիշէ՞ք Հալաճիօղլու (թուրքական պատմական ընկերութեան նախկին նախագահը) պատասխանը ձեզ Ստամբուլի համալսարանում: Ես յիշեցնեմ, որ Հայր Լեւոնը երբ պնդեց որ սեփականութեան դեֆտէրները հրատարակեն, Հալաճիօղլուն ասեց, բառացի յիշեմ. «Լեւոն բէյ, դուք այդպէս կործանեցիք Օսմանեան Կայսրութիւնը, հիմա ուզում էք կործանել հանրապետակա՞ն Թուրքիան»: Որովհետեւ դա գտնւում է բանակի տնօրինութեան տակ, սեփականութեան բոլոր մատեանները սկսած 16-րդ դարից: Լաւ: Հարցեր եթէ ունենք:

ԱՌԱՋԻՆ ՀԱՐՑԱԴՐՈՂ ԱՆՁ (ԼԵՒՈՆ) - Ես ունեմ երկու հարց: Մինչ այդ ուզում եմ շնորհակալութիւնս յայտնել շատ հետաքրքրիր էս զեկուցման համար: Որպէսզի մի յստակութիւն մտնի հարցի մէջ, ուրեմն Օսմանեան Կայսրութիւնը որպէս հարկ իւրաքանչիւր հայկական աւանի բնակչից նայել է ըստ շնչի եւ հարկ է վերցրել եւ արձանագրել նրանց անունները, ուրեմն, իւրաքանչիւր ընտանիքում քանի մարդ կայ, անունները ինչ են, ծննդեան թուականները: Սրա մասին է խօսքը, չէ՞:

ՀԱՅՐ ԼԵՒՈՆ ԶԷՔԻԵԱՆ - Չէ, իմ տեսածս, իմ ակնարկածս իտալերէն լեզուով anagraphy կը կոչուի, anagraph, ուր կ’արձանագրուի իւրաքանչիւր մարդու ծնունդը: Հին օսմանական աւանդութեան մէջ, որ յետոյ մինչեւ մերձաւոր թուական որդեգրած էր Թուրքիոյ Հանրապետութիւնը, ինքնութեան թուղթը տետրակ մըն էր, նիֆուս կը կոչուէր եւ այդ նիֆուսին մէջ մարդուն ամբողջ պատմութիւնը կար, նոյնիսկ զինուորութեան տուեալները, արձանագրութիւնները, եւ այլն: 38 էջնոց անցագրի պէս տետրակ մըն էր: Ինչպէս մեր անցագրերուն մէջ վիզան խփելու տեղ կայ, նոյնն ալ նիֆուսին պարագան էր: Բուն անձնագիրն էր, անձին պատմութիւնն էր: Հիմա փոխեցին այդ բանը: Եւրոպայի պնդումով պզտիկ թուղթ մըն է, աւելի ճիշդ քարտ մըն է, երկու երես ունի, տեղ մը գրուած են ընդհանրութիւնները՝ ծննդեան թուական, եւ այլն, յետոյ պատկերը կայ, եւ այլն: Այնպէս որ այդ հինը օսմանեան տետրն է որ Թուրքիոյ Հանրապետութեան մէջ վստահաբար գործածուած է մինչեւ ութսունական թուականները: Իմ տեսածս արդէն էջը լրացած էր: Էջը չէր դարձներ մարդը որովհետեւ պետական գաղտնիք է, եւ ես քովը կեցած ըլլալուս կրնայի ուրիշներուն գաղտնիքները իմանալ: Ես արաբերէն չգիտնալով, միայն կրցայ կարդալ իմ եւ եղբօրս անունները: Բայց կ’ենթադրեմ, որ քանի որ վրան մեր հօրը անունը կայ եւ տոհմածառի պէս (ինչպէս մեր թագաւորներուն, արքայատոհմերուն, եւ այլն տոհմածառերը) մինչեւ էջին վերեւը կ’երթայ, հետեւաբար կը խորհիմ որ այդ մեր ընտանիքին պատմութիւնն է եւ որուն մասին մեծ հայրիկէս անդին գրեթէ տեղեկութիւն չունիմ:

ԱՌԱՋԻՆ ՀԱՐՑԱԴՐՈՂ ԱՆՁ (ԼԵՒՈՆ) - Ուրեմն եթէ իւրաքանչիւր արեւմտահայ մարդու վերաբերեալ կայ այս տոհմածառերի արձանագրութիւնը, հետեւաբար, եթէ դա լրիւ բացուի, բազմաթիւ թուրք պաշտօնեաներ կարող է պարզեն որ իրենց նախնիների մէջ հայեր կան, յոյներ կան, եւ դա կարող է բաւական մեծ տակն ու վրայ վիճակ ստեղծել բուն Թուրքիայի մէջ եւ որոշ համակրանք առաջացնել Հայաստանի կամ Յունաստանի նկատմամբ [*Հայր*

*Զէքիեան ժպիտով եւ գլուխով հաւանութեան կու տայ այս խօսքին*]: Կարծեմ դուք հաստատեցիք դա ձեր գլխի շարժումով:

Հիմա երկրորդ խնդիրը, երկրորդ հարցը: Դուք ասեցիք որ իւրաքանչիւր հայ մարդու ինքնութեան, այսպէս, մտասեւեռման կենտրոնը դա ցեղասպանութեան խնդիրն է: Ըստ հոգեբանների որոշ վերլուծումների, համազգային ցաւի, աղէտի այս զգացողութիւնը 150 տարուայ պատմութիւն ունի: 150 տարին լրանալուց յետոյ բթանում է այս ցաւը եւ այլեւս մոռացութեան է ենթարկւում շատ բան: Հիմա եթէ մենք 100-ամեակին ենք մօտենում եւ համարենք որ 50 տարուայ ժամանակ ունենք, մենք տեսնում ենք այս ինքնութեան կորուստը արդէն հիմա որովհետեւ եթէ այսօր, ասենք, Դանիէլ Վարուժանի որդու` Հայկ Վարուժանի որդին, այսինքն Դանիէլ Վարուժանի թոռը, ամուսնացած է ֆիլիպինցու հետ եւ ապրում է հաւայեան կղզիներում, կամ ասենք միւս նշանաւոր մարդկանց` Սիամանթոյի քրոջ ժառանգների մէջ բոլորը չէ որ այս զգացողութիւնը ունեն, ինքնութեան կորուստը մարդկանց հետ անհետանում է, իրենց սերունդները այլեւս չեն յիշում: Բայց մենք նոյնը տեսնում ենք էստեղ: Միթէ մեծ քսակաւորները այստեղ իրօ՞ք շեշտուած ազգային ինքնութիւն ունեն երբոր աւերում են յուշարձանները, շուկայի յուշարձանը, կամ ազգաւեր քայլեր են ձեռնարկում, միթէ նրանք ինքնութիւն ունե՞ն, միթէ նրանց ինքնութեան կենտրոնում ցեղասպանութի՞ւնն է: Կարծում եմ` բոլորովին: Գուցէ չափազանցնում եմ` թող ինձ ներող լինեն, բայց ես կարծում եմ Արցախից ծագող բազմաթիւ մարդկանց համար եթէ մենք հանենք հայ-ազերի հակառակութիւնը (այսինքն` պատերազմական վիճակը եթէ հանենք), ես չգիտեմ էդտեղ ինքնութեան որ մասը կը մնայ: Եւ չէ՞ք կարծում որ սա մեզ համար մեծ վտանգ է որովհետեւ մենք տեսնում ենք երիտասարդութեան մէջ...: Երիտասարդ ուսանողներից մէկը ասում է. «Է՜ էսքան տարի խօսում են ցեղասպանութեան մասին, ինչ է, ոչինչ էլ տեղի չունեցաւ»: Արդե՞օք մեր գործնական մտածողութեան պակասը չի` որ մենք միայն թուերի մարզանքներ ենք արել եւ չենք արել փոխհատուցման որեւէ ճշգրիտ հաշուարկներ, չենք պատրաստել թղթածրարներ: Սա ասիակա՞ն ծուլութեան դրսեւորում է, սա ցաւի զգացողութեա՞ն դրսեւորում է, թէ գործնական չմտածելու` մօտաւոր մտածողութեան դրսեւորում է: Ինքնութե՞ան պակաս է վերջապէս սա: Ի՞նչ է սա ձեր կարծիքով:

ՀԱՅՐ ԼԵՒՈՆ ԶԷՔԻԵԱՆ - Շատ շնորհակալ եմ Լեւոն: Հարց մըն է որ արծարծեցիր եւ առիթ կ'ընծայես որ մէկ բան աւելցնեմ: Բնականաբար այնքան ընդարձակ նիւթ է որ կարելի է 100 հատոր գրել: Շատ ընդարձակ, շատ խոր նիւթ մըն է, բիւրեղի նման նիւթ մըն է, որուն պէտք է մեծագոյն զգուշութեամբ

մօտենանք: Ուրեմն, նախ կը կարծեմ թէ շատ ճիշդ կ՚ըսես, որ մենք Եղեռնի մասին այլեւս սկսած ենք խօսիլ այնպիսի ձեւերով (շատ պարզ է որ կոտորուեցանք, ջարդուեցանք, մորթուեցանք) որ տեղ մը necrophilie-ի կը տանի: Դիակի մասին է որ կը խօսինք՝ ոչ թէ յարութիւն առնող, ոչ թէ նորոգուող կեանքի մասին:

Հիմա արեւմտեան սփիւռքը միջին արեւելեան սփիւռքէն հիմնովին կը տարբերի: Միջին Արեւելքի մէջ, դեռ այս քանդուող Սուրիոյ մէջ, մարդը բնիկ հայախօս կը ծնի: Ես իմ ճամբորդութիւններուս ընթացքին, բացի Հայաստանէն նոր գաղթած կամ Պարսկաստանէն նոր գաղթած ընտանիքներէն (դուն ալ շատ փորձ ունիս), բնիկ հայախօս մարդ չեմ տեսած: Մէկ ուսուցիչի չեմ հանդիպած որ Պէյրութ կամ Հալէպ ծնած չըլլայ կամ ներկայիս Հայաստանէն արտագաղթած չըլլայ: Հետեւաբար, հիմնականօրէն տարբեր է: Եւ անոր համար է որ Միջին Արեւելքի հայութեան փլուզումը, իմ կարծիքովս, մաս կը կազմէ մեծ տէրութիւններու կողմէ օգտագործուող Միջին Արեւելքի տագնապին: Այս մասին անգամ մը խօսած եմ Արամ Վեհափառի հետ (Միջին Արեւելքի հայկական մեծագոյն հեղինակութիւն մըն է), ըսելով. «Իմ կարծիքով, Վեհափառ Տէր, Միջին Արեւելքի տագնապին (ներառեալ Լիբանանի քաղաքացիական պատերազմը) եթէ ոչ առաջին, եթէ ոչ երկրորդ, բայց երրորդ, նուազագոյնը չորրորդ շարժառիթը եղած է հայաթափումը»: Եւ ես ականջովս լսած եմ սա բանը: Իմ նախկին պոլսահայ աշակերտս Հոլանտայի մէջ թարգմանի դեր կատարած է սահմանապահ զինուորներուն եւ ապաստարան խնդրող գաղթողներուն միջեւ: Հայաստանէն ալ ապաստարան խնդրողներ եկած են: Իսկ ապաստարան խնդրելու համար պէտք է երկիրիդ մասին վատ խօսիս՝ իմ կեանքս վտանգի ենթակայ է եւ նման բաներ պէտք է ըսես: Եւ միւս երկիրներէն եկողներուն հանդէպ մեծ դժուարութիւններ կը յարուցանեն իսկ Հայաստանէն եկողներուն մէկ-երկու հարցումէ վերջ ներս կ՚ընդունին: Այս տղան սահմանապահներուն կը հարցնէ. «Ինչո՞ւ միւս երկիրներու նկատմամբ այնքան դժուարութիւն կը յարուցանէք իսկ Հայաստանէն եկողներուն մէկէն կ՚ընդունիք»: Գնդապետը ի՛նչ կը պատասխանէ (աս քանի տարի առաջուայ խօսակցութիւն է, Հայաստանի համար խաւարի տարիներն էին). «Հայաստանի համար շատ է երեք միլիոն ժողովուրդ, Հայաստանի համար բաւական է 700 հազար մարդ»:

Ասոնք իմ կարծիքովս պատահական բաներ չեն: Եթէ Ֆրանսայի կէս միլիոն հայերէն հազար երիտասարդ կը քալէ ցոյց ընելով, այս եւ այն պոռալով, ճանաչում, եւ այլն, մենք կը խորհինք որ ազգային ինքնութիւն կը պահենք: Ճիշդ է այդ սերունդին համար: Բայց կը կարծեմ թէ այդ սերունդին պէտք է ներշնչենք նաեւ հայոց պատմութեան գոնէ տարրական գիտակցութիւն մը,

տարրական իմացութիւն մը, նաեւ հայ արուեստի, հայ քերթողութեան իմացութիւն մը, որպէսզի իր մշակոյթովը ինքզինքը հպարտ զգայ, ոչ թէ ինքզինքը գերադասելու իմաստով: Մենք մեզի ոչ մէկէն չենք գերադասեր: Հարցը գերադասելու կամ չգերադասելու խնդիր չէ, հարցը գիտակցելու խնդիր է: Մեր այսօրուայ գիտակցութիւնը միայն մեռածներու գիտակցութիւն է՝ այսքան մարդ մեռեր է:

Շատ ճիշդ է նկատողութիւնդ: Շնորհակալ եմ:

ՄԵՐՈՒԺԱՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ - Շնորհակալութիւն: Այնուամենայնիւ, մի ճշգրտում նորից: Ուրեմն, մատեանների առումով, ինչպէս հայկական իրականութեան մէջ ունենք (մենք ունենք տոհմամատեաններ, մենք ունենք եկեղեցական տոմարներ ուր գրանցւում է ծնունդը, մկրտութիւնը, մահը եւ այլն), նոյնը ունենք նաեւ Օսմանեան Կայսրութեան մէջ՝ ֆիկսած պաշտօնական իշխանութիւնների մօտ: Բայց դրան գումարւում է եւս մի շատ կարեւոր բան՝ հարկային մատեանները, որոնք եւս զանազանւում են, մի շարք տեսակներ կան: Եւ կայ սեփականութեան ձեւերի մատեանները՝ սեփականատիրութեան մատեանները: Սեփականատիրութեան մատեաններից ոչինչ չի հրապարակուած մինչեւ այսօր: Հրապարակուած են դահիրճ դեֆտէրները՝ բնակավայր, մարդկանց քանակ, մարդկանց դասակարգում ըստ ազգութեան, կրօնի, ծիսական վայրի առկայութիւն՝ եկեղեցի, մզկիթ, եւ այլն, քանի հատ կայ, եւ այլն: Բայց սեփականութեան թղթերը, այսինքն հայ համայնքը ի՞նչ սեփականատիրութիւն ունի, այս թղթերից մինչեւ այսօր մէկ էջ չէ հրապարակուած եւ պահպանւում է ոչ թէ պետական դիւանում այլ գլխաւոր շտաբի դիւանում: Տարբերութիւնը սրա մասին է: Եւ ընդհանրապէս հայոց ցեղասպանութեան մասնագէտները շատ յաճախ որ խօսում են օսմանեան արխիւները բացելու մասին՝ բացել-չբացելու, նկատի ունեն ոչ թէ որ պիտի գնան օսմանեան դիւան, ինչպէս գնացին մի քանի ընկերներ՝ Սարաֆեան Արա, Հիլմար Քայզէր, եւ այլն, ոչ թէ որ էնտեղ պիտի մորթելու թուղթեր գտնեն, այլ գլխաւորը այս դեֆտէրներին ծանօթանան, որը արգելուած է: Շնորհակալութիւն:

ՀԱՅՐ ԼԵՒՈՆ ԶԷՔԻԵԱՆ - Մէկ բան եւս աւելցնեմ: Անշուշտ որ այդ ծագումները յայտնի պիտի ըլլան բայց նաեւ կը կարծեմ որ հիմա այստեղ ալ մենք պէտք չէ ծայրայեղութեան երթանք: Այսօր Եւրոպայի բոլոր ազգերը խառնածին ազգ են, բոլորը, մէկ հատը չկայ...: Առնենք Ֆրանսան: Ֆրանսան կերտող մեծութիւններէն ոմանք զտարիւն իտալացիներ են՝ Mazarin, Catherine de Médicis (Catherine de’ Medici է կնոջ անունը), որ Թոսքանայի խոհանոցը տարած է

Փարիզ եւ հիմնած է ֆրանսական այդ հանրածանօթ համաշխարհային խոհանոցը: Ինչպէս Ամերիկայի պարագան: Օրինակ, Ֆեթհիէ Չեթինը կրնայ բնորդ ծառայել, անձամբ ծանօթ եմ, եւ բացառիկ պատուական անձնաւորութիւն մըն է: Լաւ, տարբեր խնդիր է որ իր մօրենական մեծմայրը հայ է: Բայց ինքը չ՚ըսեր երբեք որ ես հայ եմ: Ինքը իր գիրքը կը գրէ յայտնելու համար հայ ժողովուրդին ողբերգութիւնը, թէ ինչպէս այդ տասը տարեկան աղջնակը՝ որ հոյակապ, անսխալ ուղղագրութեամբ եւ չքնաղ գեղագրութեամբ կը գրէ տասը տարեկանին, այդ ողբերգութիւնը ապրած է: Քանի անգամ Ֆեթհիէին հարցուած են՝ թէ արդեօք իր մօրենական մեծմայրը կը յիշէ՞ր հայերէն լեզուն: Ան կը պատասխանէր. «Չեմ գիտեր, որովհետեւ այդ հարցումը իրեն չեմ հարցուցած բայց հաւանօրէն մասամբ մոռցած ըլլայ»: Եւ այս է ողբերգութիւնը:

Ան ալ ըսեմ որ չկրցայ մասնակցիլ այդ Տինք հիմնարկի կազմակերպած գիտաժողովին: Բայց որոշ ելոյթներու հետեւեցայ skype-ով: Այնպիսի ելոյթներ տեսայ, մանաւանդ, ըսենք, ալեւիական եւ խառնուրդ եղող որոշ հայերու կողմէ, որ այս գործընծացը անկեղծօրէն չեմ կարծեր որ շինիչ տեղ մը կրնայ հասցնել: Կը կարծեմ որ այստեղ հարցին նկատմամբ գրեթէ ցեղապաշտային մերձեցում մը կայ: Շատ բարդ խնդիր մը կայ հոն: Քանի որ մեր բոլոր այս ժողովուրդներուն համար արմատները որոշ կարեւորութիւն ունին (շատ աւելի քան Եւրոպայի մէջ), հետեւաբար թուրք պետութիւնը (ինչպէս նաեւ ուրիշ պետութիւններ) բնականաբար կը վախնայ որ ներքին խռովութիւններ ծագին: Այդ վախը անշուշտ կայ:

ԵՐԿՐՈՐԴ ՀԱՐՑԱԴՐՈՂ ԱՆՁ (ՎԼԱԴԻՄԻՐ ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆ) - Ես ձեզ շնորհակալութիւն եմ յայտնում ձեր շատ հետաքրքրիր զեկուցման համար: Մանաւանդ դուք ձեր աշխատութիւններում կը շեշտէք որ մեր ժողովրդի նկատմամբ կատարուած ցեղասպանութիւնը աւելի վատթար էր այն պատճառով որ ոչ միայն ցեղասպանութիւն էր այլ ժողովրդին արմատախիլ անելու փորձ իր հայրենիքից: Այն որ ուզում ենք Թուրքիան ճանաչի իր պատմութիւնը եւ ամբողջ աշխարհով խոստանայ որ իրենք բարբարոսութիւն են կատարել եւ այլն, դա հասկանալի է: Բայց արդեօք չէ՞ք գտնում որ մենք պէտք է նաեւ շատ զգօն, լուրջ հայեացքով վերլուծենք: Եղեռնից տաս տարի առաջ՝ 1895-1896 թուականին, 300 հազար խաղաղ հայ կոտորուեց: Եղեռնից հինգ տարի առաջ, Ադանայում 30 հազար հայ կոտորուեց: Հայ քաղաքական միտքը չէ՞ք գտնում որ տհաս գտնուեց, հասուն չգտնուեց որպէսզի ժողովրդին պատրաստի: Եւ արդեօք մենք չպէ՞տք է այս հարցը մասնագիտօրէն մտածենք: Գիտէք, այսքանը մենք մի տեսակ ողբում ենք, ինչ որ նաեւ նուաստացուցիչ մոմէնտ կայ: Հայ,

հայ, հայ, եկէք ցաւակցենք, մեզ կոտորել են, մեզ կոտորել են, մեզ կոտորել են: Հայ քաղաքական միտքը չպէ՞տք է զգուշացնէր, մարդիկ զինուէին, երիտասարդութիւնը զինուէր եւ իսկական պաշտպանութիւն լինէր եւ այսքան կոտորած չլինէր: Եւ քաղաքական մեր միտքը շատ տհաս գտնուեց, անփոյթ գտնուեց: Եւ արդեօք մենք չպէ՞տք է այդ, մեր ազգային շրջանակներում մենք վերլուծենք այդ բաները որպէսզի առաջիկայում էլ համանման երեւոյթ մեր ժողովրդի հետ չկատարուի:

ՀԱՅՐ ԼԵՒՈՆ ԶԷՔԻԵԱՆ - Այո, շատ ճիշդ կէտի մը դուք անդրադարձաք, որ է մեր քաղաքական սխալները: Երէկ ես ինչո՞ւ Օրմանեան սրբազանի մասին խօսեցայ Մատենադարանին մէջ: Նաեւ որովհետեւ շատեր կ'առարկեն, ըսելով որ կարելի չէ պատմութիւնը դատել այսօրուան աչքով: Սա ճիշդ է: Բայց այն ժամանակ կային մարդիկ՝ որ ձայն կը բարձրացնէին, ոմանք նուազ գիտակից, ոմանք բացառիկ մեծութիւններ՝ ինչպէս Օրմանեան սրբազանը, որուն առջեւ կը կարծեմ ամէն հայ պէտք է խոնարհի: Եւ սակայն այն կէտին հասանք որ Օրմանեանին խորանին վրայ մեռցնել ուզեցինք, որ պատրիարքական աթոռէն մենք հայերս զահընկեց ըրինք զինքը: Երբոր այդ Պոլսոյ պատմական կամուրջէն կ'անցնէր, քրքրուած հայ խուժան ամբոխ մը մարդը Լինչի կ'ուզէր ենթարկել: Պետական ոստիկանութիւն ղրկուած է որ մարդը Լինչի չենթարկուի: Ես երէկ Օրմանեան սրբազանի մասին յատկապէս այս մտքով էր...: Բայց ժամանակը չէր ներեր որ աւելի բացայայտէի միտքս, որ է մեր քաղաքական սխալները: Սա առաջին կէտը պէտք է ըլլայ:

Ոճիրը ահաւոր ոճիր եղած է եւ ոչ մէկ չքմեղանք, ոչ մէկ արդարացում: Ասիկա շատ յստակ է: Բայց խնդիր է որ դուն երթաս ձեռքդ առիւծին բերանը դնես եւ առիւծը ձեռքդ խածնէ կամ փրցնէ: Նոյնիսկ յաջորդող շրջանին, արդէն Հանրապետութիւնը հիմնուած, այնպիսի քաղաքական սխալներ գործուած են որ...: Իտալացի երիտասարդ օրիորդ մը իր laurea-ին (իտալական հին աւարտաճառն էր, որ PhD-ի հաւասար բան մըն էր) համար ուսումնասիրեց Հանրապետութեան, ըսենք, միջազգային դիրքը 1918-21-ին: Խեղճ աղջիկը կ'ըսէր. «Պատանիներ այսպիսի սխալներ թոյլ պիտի չտային իրենց, ի՞նչպէս ձեր քաղաքական մարդիկը այսպիսի սխալներ թոյլ տուած են»: Ահաւոր սխալներ գործած ենք: Եւ կը կարծեմ որ այս մեր սխալներուն վրայ լրջօրէն հակիլը շատ կարեւոր է:

Նաեւ, ես միշտ սա օրինակը կը բերեմ: Թալէաթի եւ Էնվէրի պարագան հոգեբանական յատուկ պարագայ մըն է, ցնորք մը, հոգեկան ահաւոր հիւանդութիւն մը, ինչպէս, ըսենք, նացիական շատ մը ղեկավարները՝ որոնք նոյնպէս

հոգեբանօրէն խախտուած մարդիկ էին: Paranoia մըն էր: Բայց մենք ալ ունեցած ենք *միամտութեան* paranoia մը: Օրինակ, առնենք Գրիգոր Զօհրապը, որ ինծի համար ամենէն ակնառու եւ ամենէն պատկառելի դէմքերէն մէկն է: Եթէ կան ներկաներ որ երէկ ալ ներկայ էին, թող ներողամիտ գտնուին որ կը կրնեմ: Ինծի ըսած են, որ փաստաբան Գէորգ Աճէմեանը՝ որ Թուրքիոյ թիւ մէկ փաստաբաններէն մէկն էր (երբ հիւանդացաւ, այն ժամանակի նախագահ Էօզալը ըսած է որ եթէ Ամերիկա երթալով եւ անմիջապէս վիրաբուժուելով թերեւս բուժուի, իմ նախագահական օդանաւս կը տրամադրեմ), երբ կը յաճախէր իրաւաբանական ֆուքուլթէթ, իր փրոֆեսորը ըսած է իրեն. «Տղաս, դուն հայ ես, պէտք է գիտնաս որ մեր դասագիրքերը, դեռ այսօր մեր լաւագոյն իրաւաբանական գիրքերը Գրիգոր Զօհրապի գիրքերուն շաւիղներէն կ'ընթանան»: Այսպիսի մարդ մըն էր Զօհրապ: Բայց միայն իրաւաբան չէր մարդը: Աշխարհը շրջած մէկն էր: Monsieur comme il faut մըն էր ֆրանսական բացատրութեամբ, անոր մարմնացումն էր մարդը, Եւրոպա տեսած, աշխարհ տեսած, մասնական օթեակին մաս կազմող: Ի՞նչպէս այդքան միամիտ կ'ըլլայ, որ չորս ամիս անապատներու մէջ դեգերելէ, թափառական շրջելէ վերջ, դեռ կնոջը կը գրէ՝ որ «անուշիկս, սիրելիս, դուն ամէն բան ըրէ որ Թալէաթի հետ առանձին հանդիպիս եւ իրեն հետ աչքաչքի, գլուխ-գլխի խօսիս որովհետեւ վստահ եմ որ ինչ որ ինծի պատահեցաւ ինքը տեղեակ չէ»: Տիկին Վարդինէն [*Հայր Զէքիեան ձեռքով ցոյց կու տայ ներկաներէն մէկը, որ տեսագրութեան մէջ չ'երեւար*] Հալէպի որոշ դիւաններէն պատմական փաստեր քաղած է եւ կը հաստատէ ինչ որ սակայն լսած էի ականջալուր վկայութեամբ: Նոյն ինքն Ճէմալ, որ այդ ժամանակ Պաղեստին կը գտնուէր, կ'ուզէ զնէ Զօհրապը եւ Վարդգէսը փրկել եւ կ'որոշէ երթալ Սահակ Խապայեան կաթողիկոսին: Եւ կաթողիկոսը կ'ըսէ Զօհրապին. «Քանի մը օրէն պիտի գան ինծի այցելութեան, խօսիմ հետերնին»: Զօհրապի պատասխանը ի՛նչ կ'ըլլայ. «Ճէմալ արդէն շոգենաւ պիտի տրամադրէ որ միջազգային ջուրեր երթանք, այնտեղէն ալ ուրիշ նաւ մը պիտի գայ որպէսզի մեզի փախցնէ»: Զօհրապի պատասխանը մարդս ափ ի բերան կը ձգէ: «Ես պէտք է Թալէաթի հետ խորհրդակցիմ այս մասին», կ'ըսէ նաեւ Զօհրապ: Եւ երջանկայիշատակ Խապայեան կաթողիկոս Ճէմալին կ'ըսէ. «Զօհրապ կ'ուզէ Թալէաթի հետ խորհրդակցիլ»: Ճէմալ կը պատասխանէ. «Այն ատեն ես այս հարցին մէջ գործ չունիմ, թող ինքը Թալէաթի հետ իր գործը կարգադրէ»: Այսքան միամտութիւն: Կը կարծեմ թէ, իմ անձնական կարծիքս է, որ euphoria-ի ահաւոր մթնոլորտ մը կար այդ շրջանին, հարբած էին մարդիկը: Միասին յեղափոխութիւն կատարեցին, այո: Բայց բանականութեան սահմաններէն դուրս բան մը կար: Եւ այնտեղ տարբերութիւն կար. մինչ Թալէաթ եւ Էնվէր կայսրութեան մը ժառանգներն

էին, իրենք զիրենք այդ կայսրութեան մէջ սնած էին, մերոնք ինչ որ ալ ըլլայ կայսրութեան վարչամեքենային մաս չէին կազմած: Մերոնք կայսրութեան առեւտրականներն էին, ճարտարապետներն էին, արուեստագէտներն էին: 400-է աւելի հայ նկարիչ եղած է օսմանեան պալատին մէջ...

ՆԵՐԿԱՆԵՐԷՆ ՄԷԿԸ - Փող ունեցողներն էին:

ՀԱՅՐ ԼԵՒՈՆ ԶԷՔԻԵԱՆ - Նաեւ փող ունեցողները: Բայց յոռի իմաստով չէ: Երանի այդ փող ունեցողներուն պէս այսօր 500-1000 փող ունեցող ունենայինք: Պէզճեան ամիրան մայրաքաղաք մը կերտած է: Օսմանեան մայրաքաղաքին մէջ մայրաքաղաք մը կերտած է մարդը: Իր նախաձեռնած Սուրբ Փրկիչ Ազգային Հիւանդանոցը՝ որ հիմնուած է 1832-ին, բոլոր այդ ժամանակի սարքաւորումներով, այսօր Թուրքիոյ չափանիշով՝ 70 միլիոնանոց երկիր է, չորրորդ կամ հինգերորդ հիւանդանոցն է, ամէնքէն յարգուած: Մենք ամիրաները պէտք չէ որ այդպէս յետադէմ մարդիկ նկատենք: Ամիրաները դէմ էին յեղափոխական քաղաքականութեան եւ իմ համոզումով մեծ մասամբ իրաւացի էին: Կայսրութիւնը ձեռքերնուն մէջն էր: Դժբախտաբար, մեր այսպէս յեղափոխական կոչուած շարժումը երիտասարդներ էին, ուտոփիստ, քաղաքականութեան մէջ բոլորովին...

ՆԵՐԿԱՆԵՐԷՆ ՄԷԿԸ - Վնաս:

ՀԱՅՐ ԼԵՒՈՆ ԶԷՔԻԵԱՆ - Վնաս: Քաղաքականութիւնը փորձ է: Կը յիշեմ երբ Քեննէտի Կրոմիքոյի դիմաց կը նստի: Երիտասարդ էինք, մեծ հետաքրքրութեամբ կը հետեւէինք, եւ այն ժամանակ շատ աւելի ամերիկամէտ դիրքորոշում մըն ալ ունէի քաղաքական գետնի վրայ, յետոյ աչքերս բացուեցան արեւմուտքի իրականութեան նկատմամբ: Իսկ Կրոմիքոյին ի՞նչ կ'ըսէ Քեննէտի՝ որ անշուշտ սորված էր իր խորհրդականներէն. «Ես քու դիմացդ ինչպէ՞ս պիտի նստիմ համարձակ: Ինծի պէս քանիներ աչքիդ առջեւէն անցած են, եւ դուն իմ աչքերուս մէջ նայելով ինչ մտածելս կը հասկնաս: Իսկ ես առաջին անգամն է որ քու մակարդակովդ մէկու մը դիմացը կը նստիմ»: Ասիկա անշուշտ համակրանք շահելու ձեւ մըն է, բայց իրականութիւն մը կայ: Քաղաքականութիւնը ամէն բանէ առաջ փորձառութիւն է: Եւ կը կարծեմ որ ասիկա մեզի բոլորովին պակսած է եւ շատ ճիշդ է ձեր ըսածը, տոքթոր Բարխուդարեան: Կը կարծեմ ատիկա մեզի պակսեցաւ: Ես յաճախ քուրտ բարեկամներու կամ պատմութեամբ հետաքրքրուող որեւէ մարդու կ'ըսեմ որ կարդացէք հայոց պատմութիւնը, եթէ

կարելի է սկիզբէն: Նոյնիսկ երբեմն կ'ըսեմ, որ եթէ Քեննէտին՝ որ Վիեթնամ գնաց խրեցաւ հոն, կամ Աֆղանիսթան, Իրաք գացողները կարդային Փարպեցին մանաւանդ՝ թէ ինչպէս կը նկարագրէ հայոց վահանեանց ըմբոստութիւնը, կը սորվէին guerilla-ի գաղտնիքը եւ այդ արկածախնդրութիւններուն մէջ չէին մտներ: Մեր պատմութիւնը աշխարհի համար մեծ դաս է կը կարծեմ, եւ ան ալ վերջին 150 տարիներու պատմութիւնը: Բայց նախ մենք չենք կարդար դժբախտաբար, կամ կը կարդանք ռոմանթիք զգացումներով:

ԵՐՐՈՐԴ ՀԱՐՑԱԴՐՈՂ ԱՆՁ (ՍԱՐԳԻՍ ՀԱՑՊԱՆԵԱՆ) - Շատ շնորհակալութիւն ուշագրաւ զեկոյցի համար Հայր Լեւոն: Ուրեմն երկու բան որը իմ մասնագիտական ոլորտից է, ճշդման համար: Այդ քիւթիւքը, այսինքն տոհմածառի գրանցուած ամբողջ անցեալը (ապուպապերը մօր եւ հօր կողմից) անձամբ տեսել եմ որովհետեւ իմ ընտանիքին հենց տոհմածառն եմ խնդրել, *սեճէլէ* են ասում օսմաներէն: Իսկ վերջերս, Թուրքիան էդ ամբողջ արխիւը արդէն օրինական է տրամադրում, 12 թէ 14 տոլլար մուծում կայ, դիմում էք, պանքայի մուծումը անելուց յետոյ ինքը տալիս է: Բայց տալիս է մինչեւ 1895 թուականը: Միայն հայերի մասին է խօսքը կամ ասենք ոչ մուսուլման՝ *կայրիմիւսլիմ* կոչուածը՝ որը կոդաւորուած է հանրապետական Թուրքիայի ժամանակաշրջանում, 1. հրեաներն են, 2. հայերն են, 3. յոյներն են, ըստ կոդի (ծպտեալ), այսպէս ասած գաղտնի պետական կոդաւորումն է: Թուրքերի համար, օրինակ, այդ *սեճէլէ* կոչուածը՝ տոհմածառը, գնում է մինչեւ 1600 թուերը, սա ամենավերջին ժամանակն էր: Ապտուլլահ Կիւլը հայ է, Տողու Փերինչէքը հայ է, այս հայ է, այդ հայ է, էն ժամանակ մէջտեղ ելաւ՝ երբ իրենք իրենց ընտանիքով փորձեցին տեսնել որ իրենց բանը մինչեւ ո՞րտեղ է գնում եւ որտեղ նաեւ հենց էդ հայկական հետքերին հանդիպեցին իրենց ընտանիքներում: Ուստի Օսմանեան Կայսրութիւնից մնացած ամբողջ տոհմերի (ընտանիքների) հետ կապուած տեղեկութիւնը պահպանուած է լրիւութեամբ: Հայութիւնը, ինչքան է պահպանուածը չենք իմանում որովհետեւ 1895 թուականից անդին պարզապէս չեն թոյլատրում: Իսկ այժմ, իւրաքանչիւր անգամ երբ Թուրքիայի Հանրապետութիւնում խորհրդարանական ընտրութիւններ են տեղի ունենում, առաջին օրէնքը որ անցկացւում է հենց էդ օրէնքի երկարացումն է՝ որպէսզի կրկին անգամ ոչ մուսուլման հատուածին չթոյլատրուի հասկանալ այսինչ տարածքի սեփականութեան իրաւունքի պատկանելիութեան կադաստրային (kadastro) տուեալները: Մի յաւելում եւ աւարտեմ միայն այս հարցի մասին ասելիքը: Ինչպէս գիտէք, Պոլսոյ Պատրիարքարանի ամբողջ փաստաթղթերը 1916 թուականին տեղափոխուեցին Երուսաղէմ: Ուրեմն,

բարեբախտաբար այդտեղ են գտնուում այդ փաստաթղթերը: Այդտեղ, դժբախտաբար, մեր գիտական շրջանակների ուշադրութեան չի արժանացել, լուրջ աշխատանքներ կատարող չկայ այդ 1916 թուականից տեղափոխուած Սուրբ Յակոբ Ժառանգաւորաց վանքում գտնուող փաստաթղթերին: Հայապատկան քրիստոնէական` թէ՛ առաքելական, թէ՛ կաթողիկէ, թէ՛ աւետարանական եկեղեցիների հետեւորդ տեղերում, իւրաքանչիւր տեղի, գիւղի քահանան կնունքի վկայականը երեք տոմարով է կարգել, առաջին օրինակը իր ծուխին է յատկացրել, երկրորդը իր առաջնորդարանին, երրորդը Պոլսոյ Պատրիարքարանին: Քանի որ Պոլիսը եւ Երուսաղէմը իբրեւ պատրիարքական աթոռներ մայր Էջմիածնի հետ ուղղակի կապուած են, ես չգիտեմ դրանց կրկնօրինակների փոխանցումը կատարուել է թէ ոչ: Բայց իւրաքանչիւր հայորդու գոնէ մինչեւ 1915-1916 թուականները ծնուածների եւ կնունք եղածների փաստագրումը կայ, որտեղից կարելի է հայապատկանների կոնկրէտ թիւր անել:

Նախանցեալ տարի ես եւս Պոլիսում եղած մի գիտաժողովի եմ մասնակցել skype-ով, միմիայն որովհետեւ Թուրքիա այցելութեան իրաւունքը չունեմ, ինձ արգելուած է Թուրքիայի Հանրապետութիւն մտնել, վտարուել եմ Թուրքիայի Հանրապետութեան քաղաքացիութիւնից: Ուրեմն այդտեղ մի հարց կայ որը ես ուզում եմ ինքս մի օրինակով մէջբերեմ` պապենական հողերին վարադառնալու հարցը: Այս հարցը մշտապէս կարելի է հանել մեր շրջանառութիւնից որովհետեւ վերադարձի մենք կարիք չունենք, մենք այդտեղ ենք, այդտեղ ենք ոչ հայ ինքնութեամբ ապրող հատուածով: Վերջին երեք տարիները, իմ արդէն առօրեայ զբաղմունքն է դարձել դաւանափոխ, հայութիւնից դադրած հայերի բացայայտման աշխատանքները: Երեւի հիմա երբ վերադառնամ ու ելեկտրոնային փոստս բացեմ մի հարիւր նամակ եւս` Այնթապից, Ուրֆայից, Մալաթիայից, Տերսիմից, ամէն տեղից, որ մենք ինչպէս մեր բարեկամներին գտնենք, իմ տատիկս այսպէս, իմ պապիկս այսպէս: Այս պատմութիւններն է, իրար շատ նման: Նրանցից մեծ մասը այս վերջին երեք տարիների ընթացքում գտան իրենց բարեկամներին: Այսինքն այդ Ֆեթիհէ Չէթինները չակերտեալ, Կատարեան ընտանիքի զաւակները, այդքան շատանում են ամէն օր` որ երեւի թէ մենք այս խնդրի առաջ պիտի կանգնենք եւ յառաջիկայ յիսուն տարին հայ ինքնութեամբ չապրող հայերի դէպի հայութիւն վերադարձի հարցով զբաղուենք: Դա շատ աւելի մեծ փոխհատուցում է լինելու քան ցանկացած այլ որեւէ փոխհատուցում որովհետեւ այս մարդիկ, ի տարբերութիւն մեզ բոլորիս, Չիլի չեն ապրիր, Վենետիկ չեն ապրիր, այլ Խարբերդ կ'ապրեն, այդտեղից չեն հեռացել, իրենք այդտեղ մնացել են, իրենք այդտեղ ապրել են, հայկական լեռնաշխարհի, այսպէս ասած, զաւակներն են: Բայց իրենք հայկական ինքնութիւնը չեն ապրել,

զազա են դարձել, ալեւի են դարձել, քուրտ են դարձել, չէչնի են դարձել, թուրքմէն են դարձել, թուրք, չէրքէզ, չէչէն դարձող ընտանիքներ կան, ես իմ շփումից եմ ասում, եւ այս մարդկանց, իրենց հայկականութիւնը պահպանող միակ բանը այդտեղի յուշարձաններն են, ինչպէս Հայր Լեւոնը շատ ճշգրիտ նշեց: Եւ բարեբախտաբար, ըստ նոր օրէնքներին (Թուրքիայի Հանրապետութեան դէպի ժողովրդավարացման տանող), իւրաքանչիւր համայնքում եթէ 500 մարդ քով քովի է գալիս եւ դիմում է ներկայացնում այդտեղի յուշարձանի վերանորոգման համար, լոկալ ուժերով դրա վերակառուցման հնարաւորութիւններ է տրւում:

Վերջին խօսք: Ուրեմն, արդէն մայրենի լեզուով ուսուցումը Թուրքիայի Հանրապետութիւնում արգելուած չի այդպէս ինչպէս էր մինչեւ երկու տարի առաջ: Յատկապէս Տերսինի շրջանում, զազաները, զազա ժողովուրդը՝ որ քուրտ չեն, սկսել են արդէն դպրոց զրոյից: Ինչ որ մեր մօտ 250 տարի առաջ է եղել, հիմա իրենց մօտ է սկսում՝ մայրենի լեզուով ուսուցում, որովհետեւ մեռեալ լեզու է դառնում զազաերէնը: Իրենք նախընտրում են երկրորդ լեզուն հայերէնը ընտրել եւ ուզում են որ զազա լեզու դասաւանդուող իւրաքանչիւր օջախում հայերէնը դառնայ երկրորդ լեզու որովհետեւ ամենաշատ հայը՝ ինքնութեամբ հայը, էթնիկ հայը, զազա ժողովուրդի մէջ է որ կորսուած է չակերտեալ: Եւ երկրորդը Համշէնի տարածքն է որտեղ կոմպակտ 30-ից մինչեւ 50-54 հազարի հասնող հայութիւն կայ՝ բռնի իսլամացուած, ուծացուած, այսպէս ասած, որոնց մօտ մայրենի լեզուն պահպանուել է, այսինքն բարբառային տեսքը: Հիմա իրենց մօտ գրական հայերէնի (այժմ մեր օգտագործած աշխարհիկ արեւելահայերէնի) պահանջը կայ եւ այդ օրէնքից մենք կարող ենք օգտուել յատկապէս էդ երկու տարածքներում, բայց նաեւ ինչու չէ Տիգրանակերտում՝ որտեղ կայ դրա օրինակը, եւ մնացած հատուածներում: Հայերէնի դասաւանդման գործը անելու դէպքում դուք կը տեսնէք ինչպէս այդ հիմակուայ հազարները տասնեակ հազարների, յետոյ հարիւր հազարների, գուցէ միլիոնի հասնեն, չգիտեմ: Բայց նրանք Սան Դիեկօ չեն ապրել, Բուենոս Այրէս չեն ապրել, կ'ապրեն այդտեղ ինչը մեր բնօրրանն է, հայրենիքն է: Այսքան:

ՀԱՅՐ ԼԵՒՈՆ ԶԷՔԻԵԱՆ - Շատ շնորհակալ եմ: Այս առնչութեամբ էր որ այդ գիտաժողովը եղաւ եւ ուր բաւական լաւ զեկոյցներ կային, շատ վատ զեկոյցներ ալ կային, ոմանք նաեւ այսպէս զզացախառն...: Հիմա ձեզի շատ պարզ բան մը ըսեմ: Ես պաշտօնապէս այս տարածքի հողերուն վրայ հէչ եմ, պարզ խօսինք: Երբոր մենք կը ջանանք հայ մարդը՝ որ ողնածուծովը, արիւնովը, խորքովը, մոխրովը հայ է, մեզմէ հեռու պահել: Ես հիմա այս անգամ երկիր մտայ առանց վիզայի, ոչ թէ որովհետեւ հայ նկատուած եմ, այլ որովհետեւ Իտալիոյ քաղաքա-

ցի եմ, եւ Եւրոպայի քաղաքացիներուն, Եւրոպական Միութեան համար վիզայի պարտաւորութիւնը ջնջուեցաւ: Բայց երբ երկիր կը մտնէի, տեսայ արտաքաղթուած մարդիկ, տիկին մը երեք կամ չորսամեայ զաւակովը՝ որ այդ մանուկին համար վիզա կը հանէր:

Հիմա այս հարցը կայ՝ որ մենք մէյ մը նախ մեր հայութիւնը պահենք, շատ կարեւոր է կը կարծեմ: Այս մէկ: Երկրորդ, Ֆեթհիէ Չէթինի միայն մօրը մայրը հայ է: Մնացած բոլոր կողմը հայ չեն եւ ինքը երբեք չէ ըսած (ամէն անգամ որ մտերմաբար խօսած ենք միասին, ամէն Պոլիս երթալուս միշտ մէկ, թերեւս երկու անգամ կը հանդիպինք) թէ հայ եմ: Բայց հայ ժողովուրդի հանդէպ մեծ համակրանք, իսկական համակրանք՝ empathie եւ ոչ թէ sympathie, ունեցող անձերէն մէկն է:

Հիմա ուրիշ հարց մը կայ: Կան հայ ընտանիքներ, բնականաբար զազայացած, քրտացած, թրքացած կամ լազացած, ինչեւիցէ, որոնց նախնիքը նահատակներ չէին: Ոմանք մնացած են հոն առանց ուրացութեան, բայց ոմանք ալ դիւրութեան համար՝ մինչ ուրիշներ ճիտերնին գլխատուելու կ'երթային, հանգիստ կերպով թլփատուած են, *քէտէմէի շեհատէթ* հանած են եւ հոն մնացած են: Հիմա անոնց թոռները չէ որ..., քանի որ մեր նահատակներն են որ մեր ինքնութիւնը պահած են (ասիկա կրօնամոլութիւն չէ, պարզապէս ինքնութեան համար տրուած վկայութիւն է): Անոնց ես կը կոչեմ ծագումով հայ: Այստեղ պզտիկ չակերտ մը բանամ: Ամէն անգամ որ ինծի պէս մարդոց, մանաւանդ պոլսահայերուն կամ սուրիահայերուն, կ'ըսեն «ծագումով հայ», մազերս կը փշաքաղուին: Մենք ծագումով հայ չենք: Ինչ կ'ուզեն թող ըսեն, ես հայ եմ, վերջ: Մեր լեզուին մէջ «ծագումով»-ը չի թարգմաներ je suis d'origine arménienne-ը, տարբեր յղացք է, տարբեր գաղափարախօսութիւն է: Մեր լեզուով «ծագումով հայ»-ը հայութիւնը մոռցած կամ ուրացած հայ է: Այս է: Ասիկա քանի անգամ ըսած եմ նաեւ ծանօթ հեռուստատեսութեան աշխատակիցներու, որոնք միշտ կ'ըսեն «ծագումով հայ է», «ծագումով հայ է»:

Ինչեւիցէ: Որովհետեւ ծագումով հայերու մէջ, ըսենք իսլամացած, քրտացած, թրքացած, լազացած, զազայացած հայերու պարագային, կան մարդիկ որ ամենադաժանները եղած են: Օրինակ՝ Իսմէթ Փաշան, նոր տեղեկացայ որ հայ է, որովհետեւ կասկած կար՝ քրդ՞ուրտ է, հա՞յ է: Ասոր մասին ինծի ըսաւ պոլսահայ տիկին մը (որուն մասին աւելի չմանրամասնեմ), որ շատ մտերիմ է անոր ընտանիքին: Պէտք է ըսեմ որ ընտանիքը շատ բարեխնամ մարդիկ են: Բայց ինքը, դուք ինձմէ լաւ գիտէք իր նշանաւոր խօսքը. «Լեմոն վաճառելու պիտի մատնենք զիրենք»: Եւ երբ տեղ մը գացեր է, ըսեր է. «Ասոնք դեռ շատ են այստեղ»: Իսկ վերջերս Զաւաքոհլուն գրեց՝ թէ Իսմէթ Փաշան երբ Հէյպէլիի մէջ

յունարէն խօսող կինէր կը լսէ, կ'ըսէ. «Դեռ ասոնք մնացի՞ն այստեղ»: Եւ իր կեանքին վերջերը կը կանչէ այս կինը ու կ'ըսէ. «Քեզի գաղտնիք մը ըսեմ: Մենք հայ ենք, հայ եղած ենք»: Իր կեանքին մէջ վերջին դրուագ մը կայ: Այս մարդը մինչեւ կէս ժամ մահուընէ առաջ միտքը լրիւ պայծառ էր: Ես Պոլիս էի այդ շրջանին, 1973-ին մեռաւ, մահուընէ քիչ մը առաջ անդրանիկ տղուն կ'ըսէ. «Գնա՛, գրադարանէն այսինչ գիրքը բեր»: Տղան կ'երթայ գիրքը կը բերէ: Այդ գրքին մէջ (հիմա չեմ կրցած ստուգել լրի՞ւ հայերէն էր թէ հայոց այբուբենը կար) քան րոպէ անընդհատ այբուբենը կը նայի, կը թերթատէ, կը թերթատէ, կը թերթատէ: Վերջապէս, քան րոպէ վերջ գիրքը ետ կու տայ, «տար տեղը դիր» կ'ըսէ, մահաքունի մէջ կը մտնէ եւ կէս ժամ վերջ կը մեռնի (ասիկա *Մարմարա*ն ալ գրեց եւ թրքական մէկ-երկու թերթ ալ գրեցին, որովհետեւ այն թուականներուն *Մարմարա*ն չէր գրեր բան մը որ թրքական թերթի մէջ արդէն գրուած չըլլար, առ ի զգուշութիւն. տարբեր պայմաններ էին): Այս ալ կը կարծեմ որ գուցէ խղճի խայթ մըն էր, չեմ գիտեր, բայց հոգեբանօրէն...: Եւ այսինքն հայերու մէջ կան, օրինակ մեր թաղապետ Մուխթարը կար, բոլոր հայերը կը վախնային այդ մարդէն, ամէնքն ալ գիտէին որ հայ եղած է: Այս ալ պէտք չէ որ մենք փակագիծի մէջ դնենք: Այս խանդավառութեամբ կրնանք նոր փորձանքներ ալ բանալ մեր գլխուն: Արդէն մեր գլխուն եկած փորձանքը բաւական է:

Որով կը կարծեմ որ այդ իսլամացած հայերու հարցին շատ զգուշութեամբ պէտք է մօտենալ: Չեմ ըսեր թէ վանենք: Եւ եթէ մենք կարենանք այնտեղ, այդ Անատոլիոյ տարածքին ստեղծել մարդկային շերտ մը որ մեզի բարեկամ ըլլայ, որ դուն առանց վախի, երկիւղի կարենաս երթալ, այցելել, խօսիլ, այդ մարդոց հետ հաղորդակցիլ, ասիկա կը կարծեմ թէ արդէն ձեռքբերում մըն է: Կը կարծեմ թէ շատ բարդ հարց մըն է, շատ երեսակներ ունի: Բայց բնականաբար, եթէ Թուրքիոյ ներկայ ժողովուրդին մէջ ցեղային առումով հարազատ թուրք փնտռես՝ Դիոգենէսի լապտերով պիտի փնտռես: Եւ անոնք հաւանօրէն այծեպաններն են որովհետեւ սուլթանը անգամ լրիւ թուրք չէ եղած:

Շատ ողջունելի է որ ամէն մարդ իր արմատներուն նախ գիտակցի, եթէ անշուշտ կը փափաքի վերադառնալ: Բայց բաւական բարդ հարց մըն է: Պիտի ըսէի՝ մէկէն շատ չվազենք: Այդ մտահոգութիւնը քիչ մը կայ իմ մէջս:

ՉՈՐՐՈՐԴ ՀԱՐՑԱԴՐՈՂ ԱՆՁ (ՍԱԳՕ ԱՐԵԱՆ) - Գիտէի որ շահեկան պիտի ըլլար ձեր այսօրուայ ելոյթը: Իմ համար միշտ էական եղած է հայ-թուրք յարաբերութիւններու խնդիրը, ատելութեան խնդիրը՝ որուն մասին շատ գիտական ձեւով ներկայացուցիք: Եւ կը կարծեմ ձեր խօսքին մէջ ըսիք որ այդ ատելութեան հետեւանքն է որ մենք գրեթէ հարիւր տարի է, մանաւանդ սփիւռ-

քի մէջ, մատնուած ենք անգործութեան բացի կարգ մը ճառագայթներէ: Ես այդ հարցը նաեւ պիտի կապեմ Քեսապի այսօրուայ պատահածներուն, որովհետեւ մենք բոլորս գիտենք որ երեք տարիէ ի վեր թուրքը ձեռնձալ չէ մնացած այդտեղ եւ մենք ոչինչ ըրած ենք, եւ ի հեճուկս ամէն դէպքերուն, մենք կը համարձակինք բեմերէն ըսելու որ հայերը թող մնան Լաթաքիոյ մէջ՝ վաղը գուցէ վերադառնան: Սա պատանդի կարգավիճակի կը տանինք մենք մեր ձեռքերով: Ըսելիքս ան է, որ դուք մօտեցաք այդ հարցին բայց ուղղակի դիտարկում չըրիք: Մենք ե՞րբ պիտի ունենանք ազգային ծրագիր: Սրբադասումը բնաւ ազգային ծրագիր չէ: Եւ իմ համար շատ աւելի կարեւոր է ազգային ծրագիր ունենալը, թուրքին հետ գուցէ խօսելու: Օր մը պիտի խօսինք, չէ՞, պիտի խօսինք: Ո՞ւր է մեր ազգային ծրագիրը: Շնորհակալ եմ:

ՀԱՅՐ ԼԵՒՈՆ ԶԷՔԻՅԵԱՆ - Շատ դիպուկ հարցում մը: Իմ կարծիքովս, ազգային ծրագիրը պիտի մշակէ հայոց պետութիւնը: [*Շշուկ ներկաներուն մէջ*]: Ես այդ հարցին մէջ չեմ ուզեր մտնել որովհետեւ սա տարբեր հարց է: Միայն սա ըսեմ որ Հայաստանի արտաքին քաղաքականութիւնը՝ որ չափազանց կարեւոր է որեւէ երկրի համար, մանաւանդ տկար կամ լուսանցային երկիրներու համար, ինչպէս որ ենք, ինծի անկեղծօրէն բաւարար չի թուիր եւ յաջող չի թուիր: Մանաւանդ երբ մենք երրորդ ուժերու կը դիմենք անընդհատ: Եւ այս պարագային յաճախ այդ երրորդ ուժը մեր դաշնակից պետութիւնն ալ չէ: Չակերտաւոր մեր թշնամիներն են: Այսինքն արեւմուտքն է՝ ՆԱԹՕ-ն է: Այս է մեր ներկայ քաղաքական կարգավիճակը՝ ուզենք, չուզենք, լաւ է, գէշ է, որովհետեւ վերջապէս գիտենք այն զինակցութիւնը որ կայ Իսրայէլի եւ Ատըրպէյճանի միջեւ: Հրեայ բարեկամ մը ունիմ, շատ սիրելի մարդ մը, շատ թանկագին ինծի համար: Օր մը Զուիցերիա կը քալէինք միասին, ըսաւ. «Լեւոն, մեր պետութիւնները, բաց խօսինք, իրարու թշնամի են, այն իմաստով որ մեր շահերը իրարու չեն համընկնիր: Բայց ասիկա պէտք չէ արգելք ըլլայ մեր բարեկամութեան եւ համագործակցութեան»:

Եւ կը կարծեմ որ այստեղ մտաւորականութեան ալ հարց մը կայ: Եւ որովհետեւ այստեղ մտաւորական մարդիկ ենք վերջապէս, լայն առումով գոնէ մտաւորականներ ենք բոլորս, պիտի փափաքէի որ մենք մտաւորականներս՝ ոչ թէ պետութիւնը, դեր մը կատարէինք Թուրքիոյ հետ ուղղակի խօսելու: Ես այն համոզումը ունիմ, քիչ մը կը չափազանցեմ, որ եթէ ամերիկեան սենատն ալ ընդունի, Աւստրալիան ալ, բոլոր աշխարհը վեր կանգնի եւ ըսէ ցեղասպանութիւն եղած է, Թուրքիան՝ որ այսօր 70 միլիոն է, կրնայ յամառիլ եւ չեղաւ ըսել: Եւ պէտք է մենք Թուրքիոյ հետ ուղղակի խօսինք: Մեծ դիւանագիտական

աւանդ ունեցող երկիր մըն է, կը տեսնենք: Եւ Թուրքիոյ մէջ մտաւորականութիւն մը կայ որուն հանդէպ ես մեծ յարգանք ունիմ:

Օր մը ընթրիքի գացեր ենք, նորէն Հրանդ Տինքի կազմակերպած մէկ գիտաժողովի մը, քովս անծանօթ տիկին մը նստեր է եւ սկսանք խօսիլ: Կինը միջին տարիքով՝ 40-45 տարեկան, սկսաւ պատմել՝ թէ ես Հարուըրտ տոքթորական ըրի, աս ըրի, ատ ըրի, յետոյ երկիր վերադարձայ, ի միջի այլոց չորս տարի ալ նստայ (բանտ նստեցայ): Այսինքն, չորս տարուան բանտարկութիւնը իբրեւ վէպ կը պատմէ: Ես այդ մարդոց հանդէպ մեծ յարգանք ունիմ: Եւրոպայի մէջ ինծի պատահած է համալսարանի գործընկերներ՝ որ ըսած են. «Լեւոն, եթէ այսպէս գրեմ արդեօք Թուրքիան ինծի վիզա կու տա՞յ որ այցելեմ»: «Եղբայր» ըսի, «քու մտածումդ վիզայի՞ մը համար պիտի մատնես»: Եւ մենք այդ մտաւորականութեան հետ պէտք է խօսինք: Կը կարծեմ որ կան գոնէ երեք հատ, չորս հատ, գուցէ եւ հինգ հատ լաւագոյն մակարդակի համալսարաններ, լայն մտաւորականութիւն, որոնց հետ պէտք է մեր, այստեղի համալսարանները, մշակութային կեդրոնները յարաբերութիւն մշակեն: Յաճախ ինծի ըսուած է, հիմա չեմ գիտեր որքան ճիշդ է, որ «մենք առաջարկ ըրինք, մեզի մերժողական պատասխան տրուեցաւ»: Չեմ գիտեր որքան ճիշդ է, որքան չէ: Բայց պէտք է որ անպայման բան մը թափանցենք: Եւ կը կարծեմ որ այս է ելքի ճամբան:

Թուրքիան իր պատմութիւնը շատ լաւ գիտէ: Եւրոպան պատմութեան դասընթացք գրեթէ...: Իտալիան երկու տարի է պատմութեան դասընթացքը ջնջեց: Ես ալ ստորագրած եմ, որ այսօր Իտալիոյ մէջ աշխարհագրութեան դասը չջնջուի: Թուրքիոյ մէջ, տասը տարեկանիս, այդպէս էր համակարգը, երեսուներկու սուլթաններու անունները մէկը միւսին ետեւէն կ'ըսէինք: Եւ երբ տիկին Մերքէլը կ'ըսէ Էրտօղանին որ «ճանաչէք ցեղասպանութիւնը», մարդը տիկին Մերքէլին վրայ կը խնդայ: Որովհետեւ գիտէ որ Գերմանիան ալ...: Թող տիկին Մերքէլը ըսէ՝ որ «մենք ալ այդ ժողովուրդին դաւաճանեցինք, մենք ալ մեղսակից ենք, եկէք միասին ճանաչումը կատարենք»:

Նոյնը Սարքոզին: Զիս ամենէն աւելի կը տպաւորէ հայ կամաւորներու յանձնումը, բացի Կիլիկիոյ վաճառումէն: Ոսկիով վաճառած են: Այդ Արարայի ճակատամարտը որուն մասին քիչ կը խօսուի: Մեծն Բրիտանիան՝ մեծագոյն կայսրութիւնն էր ժամանակին, վեց անգամ յարձակած է եւ չէ կրցած այդ գերմանական դիրքերը զգետնել: Այս կամաւորները առտուան չորսին կը սկսին գրոհը, ժամը տասնըմէկին արդէն բլրագագաթը կը հասնին: Եւ այս մարդիկը յանձնուած են ձրիաբար: Եւ պարոն Սարքոզին կու գայ այստեղ Թուրքիոյ կոչ կ'ընէ՝ «ճանաչում կատարէ», եւ չ'ըսեր որ «մենք ալ այս ժողովուրդին դաւաճանեցինք»:

Բայց ինչ որ մեզի կը վերաբերի իբր մտաւորական, ամէն անգամ որ Պոլիսէն հրաւէր մը կու գայ, պէտք է ընդունուի այդ հրաւէրը: Գնդակը օդին մէջ բռնենք: Չթողունք որ գետին իյնայ: Երթանք խօսինք: Ես գացի հոն ահաւասիկ, փառք Աստուծոյ ողջ ալ վերադարձայ: Պոլսոյ պետական համալսարանի ամպիոնէն ինչ ըսի գիտէ՞ք. «Շատեր կ'ըսեն, թէ արխիւներու դիմենք կամ թէ յանձնախումբեր կազմենք: Ո՞ր արխիւը, արխիւը մեր այստեղ կոխած հողն է: Այստեղէն մինչեւ Կարս երկու միլիոն հայութիւն կ'ապրէր, երկու հազար եւ աւելի եկեղեցի կար, երկու հազար եւ աւելի դպրոց, հաստատութիւն կար, գրեթէ հետքը չէ մնացած: Արխիւը հոս է, պէտք չկայ թուղթեր փնտռել»: Կը կարծեմ որ պէտք չէ որ առիթները փախցնենք: Պոլիս չմեկնած որոշ յուզում մըն ալ ունէի՝ ինչ որ ալ ըլլայ քսան տարի է չէի վերադարձած (յատուկ արգելք մը չունէի, բայց առ ի զգուշութիւն): Պոլիս վերադարձայ երբ զգացի որ բան մը փոխուած է: Պէտք է ընդունիլ որ մեծ փոփոխութիւններ եղած են (մաղթենք շարունակուին մնալ): Բայց բեմէն, Պոլսոյ համալսարանի բեմէն, պետական աւագանիի ներկայութեան, զաղտնի սպասարկութեան ներկայութեան, խօսիլ այս հարցի մասին եւ ըսել որ այս կեցած մեր հողը արխիւն է, պէտք չկայ որ թուղթեր փնտռէք...:

Մեկնելուս նախորդ գիշերը, յանկարծ համակարգիչը կը բանամ, վերջին ելգիր մը կը հասնի, կը նայիմ թէ ով է, թրքերէն է [անունը չի յիշեր], կ'ըսէ. «Պօղոս պէյ, սա պահուս ձեռքս անցաւ վաղուան յայտագիրը, ձեր անունը տեսայ: Չեմ գիտեր ինչ մթնոլորտ պիտի տիրէ հոն, գուցէ անախորժ բան մըն ալ պատահի: Կը կարծեմ որ հայ համայնքէն շատ քիչ մարդ պիտի գտնուի», իսկապէս չորս հոգի գտնուած էր, «ես պիտի գամ որպէսզի դուք ձեզ առանձին չզգաք»: Եւ այս մարդն ալ բանտ մտած մարդ է: Այնպէս որ այս մտաւորականութեան հետ մենք պէտք է խօսինք նաեւ այդ մարդիկը քաջալերելու համար, որ իրենք զիրենք առանձին չզգան: Սապանճը, Մարմարա, Պիլկի Համալսարանները հոյակապ համալսարաններ են, ամենալայնախոհ մարդիկը կան այնտեղ: Մենք միայն մէկ-երկու անուն կը յիշենք՝ Թանէր Աքչամ եւ այլն: Սկիզբը Թանէր Աքչամ մէկ հոգի էր, այսօր ես հաշիւը կորսնցուցած եմ: Փընար Սելէք մը կայ...:

Ուրեմն, շատ ուրախ եմ եւ շատ շնորհակալ եմ յատկապէս հարցադրութիւն դնողներուն կամ յաւելեալ մեկնաբանութիւններ տուողներուն, որովհետեւ շատ մեծ առիթ մը ընծայեցին: Եւ մաղթեմ որ կրկին առիթ ունենանք այսպէս վերադառնալու միասին քննարկելու այս հարցերը: Մեծ ուրախութիւն, մեծ հոգեկան վայելք մը եղաւ ինծի համար: Շնորհակալ եմ նաեւ ձեր ուշադիր եւ այսքան երկար տեւող ունկնդրութեան եւ մասնակցութեան համար: Շատ շնորհակալ եմ:

[*Ծափահարութիւն*]

ՄԵՐՈՒԺԱՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ - Շնորհակալութիւն Հայր Ղեւոնդին այս էմոցիոնալ, յուզումնալից երեկոն պարգեւելու համար: Անկասկած հարիւրամեակը կարծես թէ խթան հանդիսացաւ որ հայկական՝ Հայաստանի եւ սփիւռքի էլիտներում սկսուի նորից քննարկումը՝ յիշողութիւն եւ մարտահրաւէր, ինչ անել, ինչպէս անել: Եւ անկասկած էապիսի քննարկումները ամենեւին շարքային միջոցառումների մասին չի որ վկայում են: Ամբողջ դահլիճի նոյնիսկ կեցուածքից երեւում է մարդիկ ինչ որոնումների մէջ են: Էդ որոնումները տիրում է հայ մտաւոր բոլոր շրջանակներում:

Հայր Ղեւոնդը տուեց Արա Սարաֆեանի անունը Լոնդոնից, Կոմիտաս Ինստիտուտի տնօրէնը, երիտասարդ տղայ, որ մի քանի տարի է արդէն անընդհատ Ապրիլի 24-ը անցկացնում է Տիարպէքիրում, քաղաքապետի հետ միասին եւ քաղաքային իշխանութիւնների եւ տեղի բնակչութեան հետ նշելով Ապրիլի 24-ը:

Հետեւում եմ Հայր Ղեւոնդի բոլոր այցերին, Թուրքիայի համալսարաններում խոշոր գիտաժողովների ելոյթներին: Թուրքական համալսարանները, յատկապէս Ստամբուլի մասնաւոր համալսարանները՝ Սաբանջի, Բիլգի ասեցիք: Գիտէ՞ք ինչքան տպաւորիչ է. իմ բարեկամ Մարք Նշանեանը խոստովանում էր ինձ՝ որ երբեւէ Երեւանի պետական համալսարանը իրեն չի հրաւիրել Եղեռնի գրականութիւն դասաւանդելու: Սաբանջին հրաւիրեց: Մարք Նշանեանը մի քանի տարի անընդհատ վեց-վեց ամիս Սաբանջիում դասաւանդում է աղէտի գրականութիւն, Յակոբ Օշական եւ Դանիէլ Վարուժան է կարդում: Անկասկած, իսկայական փոփոխութիւնների մասին է խօսքը, ինչպէս վկայեց Հայր Ղեւոնդը: Վերջերս, Հայր Ղեւոնդ, էդպիսի մի առաջարկ Հայ Մատենագրութեան Թուանշանային Գրադարանը եւս ստացաւ, Փարիզից Իմանքոյի ճանապարհով: Ուրեմն, Ստամբուլի պետական համալսարանը դիմեց մեզ համատեղ թուայնացնելու Ջէքի Կարապետեանի հայերէն-օսմաներէն եւ օսմաներէն-հայերէն բառարանները: Մենք սիրայօժար ամբողջ ծրագիրը կազմեցինք, ուղարկեցինք, կը սպասենք իրենց պատասխանին եւ յետոյ տեսնենք թէ ինչպէս ենք դա կեանքի կոչում: Բայց մասնագիտօրէն ինչ մեզանից պահանջւում էր արել ենք:

Եւ վերջի բանն էլ կ՚ասեմ Սարգիսի յիշատակած Պոլսոյ Պատրիարքարանի դիւանի Երուսաղէմ գտնուելու մասին: Կարող եմ ուրախութեամբ նշել, որ աշխարհի խոշորագոյն մօտ տասը արխիւների նիւթերը արդէն Երեւանում մեր մօտ են, եւ շուտով կը ստեղծուի խոշոր թուային շտեմարան ցեղասպանութեան նիւթերի: Երուսաղէմի պատրիարքարանից եւս 60 հազար դոկումենտի միկրոժապաւէնները բերուած է, որից 8 հազարը օսմաներէն են: Տեսնենք զոնէ մէկ տարուան մէջ ինչքան կը յաջողուի թուայնացնել եւ բացել:

Շնորհակալութիւն բոլորիդ: Եւ Հայր Ղեւոնդ, կրկնակի անգամ բոլորիս կողմից շնորհակալութիւն ձեզ:

[*Ծափահարութիւն*]